

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 1982

## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ՄԱԿ-Ի ԳԼԽԱՎՈՐ ԱՍԱՄԲԼԵԱՅԻ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՒԿ ՆՍՏԱՇՐՋԱՆԻՆ

Սովետական Միության անունից, 269-միլիոնանոց ժողովրդի անունից ես դիմում եմ Միավորված ազգերի կազմակերպության գլխավոր ասամբլեային, որը գումարել է զինաթափման հարցերին նվիրված իր երկրորդ հատուկ նստաշրջանը:

Մեծ ու պատասխանատու խնդիրներ են ծառացած նստաշրջանի առջև: Նրա օրակարգում դրված են մի շարք առաջնահերթ նշանակություն ունեցող հարցեր:

Բայց եթե առանձնացնելու լինենք ամենակարևոր, ամենացավոտ հարցը, որն այժմ հուզում է մարդկանց մեր մոլորակի բոլոր անկյուններում, որի վրա սևեռված է աշխարհի շատ երկրների պետական ու հասարակական գործիչների միտքը, ապա դա այն մտահոգությունն է, որ կասեցվի զենքի ավելի ու ավելի կործանարար տեսակների անվերջ ավելացումը, բեկում կատարվի դեպի միջազգային հարաբերությունների բարելավումը, թույլ չտրվի միջուկային աղետ:

Սովետական Միության քաղաքականության մեջ խաղաղության նկատմամբ հոգածությունը գերիշխողն է: Մենք համոզված ենք, որ պետությունների և դրանց խմբերի միջև եղած ոչ մի հասարակարգային հակասություն, ապրելակերպի կամ գաղափարախոսության մեջ եղած ոչ մի տարբերություն, ոչ մի րոպեական շահ չեն կարող ետ վանել հիմնարար, բոլոր ժողովուրդների համար ընդհանուր անհրաժեշտությունը՝ պահպանել խաղաղությունը, կանխել միջուկային պատերազմը:

Այսօր, ավելի քան երբևիցե, բոլոր պետություններից պահանջվում են նպատակասլաց, կշռադատված գործողություններ հանուն այդ վեհ նպատակի:

Ղեկավարվելով միջուկային ամայացման սպառնալիքը ժողովուրդներից ետ վանելու և վերջին հաշվով մարդկության կյանքից դրա բուն հնարավորությունը բացառելու համար իրենից կախված ամեն բան անելու ձգտումով, սովետական պետությունը հանդիսավոր կերպով հայտարարում է.

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆ Է ՍՏԱՆՁՆՈՒՄ ԱՌԱՋԻՆԸ ՉԳՈՐԾԱԴՐԵԼ ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԶԵՆՔ:**

Այս պարտավորությունն ուժի մեջ է մտնում անհապաղ, ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի ամբիոնից հրապարակվելու պահին:

Ինչո՞ւ է Սովետական Միությունն այդպիսի քայլի դիմում այն պայմաններում, երբ ՆԱՏՕ խմբավորման մեջ մտնող միջուկային տերությունները, այդ թվում ԱՄՆ-ը, չեն թաքցնում, որ իրենց ռազմական դոկտրինան ո՛չ միայն չի բացառում առաջինը միջուկային զենք գործադրելու հնարավորությունը, այլև փաստորեն հիմնվում է այդ վտանգավոր նախադրյալի վրա:

Ընդունելով այս որոշումը՝ Սովետական Միությունը ելնում է այն անառարկելի և արդի միջազգային իրադրության մեջ որոշիչ փաստից, որ եթե սկսվի միջուկային պատերազմը, կնշանակի մարդկային քաղաքակրթության կործանում, իսկ, գուցե և, երկրագնդի վրա բուն կյանքի կործանում:

Ուրեմն, աշխարհի բախտի համար իրենց պատասխանատվությունը գիտակցող պետությունների ղեկավարների գերագույն պարտքն է բոլոր ջանքերը ներդնել, որպեսզի միջուկային զենքը երբեք չգործադրվի:

Աշխարհի ժողովուրդներն իրավունք ունեն ակնկալելու, որ Սովետական Միության որոշմանը կհետևեն մյուս միջուկային պետությունների հանդիպական քայլերը: Եթե մյուս միջուկային տերությունները նույնքան պարզ ու հըստակ պարտավորություն ստանձնեն առաջինը չգործադրելու միջուկային զենք, դա իրականում համազոր կլիներ առհասարակ միջուկային զենքի կիրառման արգելման, հանուն որի հանդես է գալիս աշխարհի երկրների գերակշռող մեծամասնությունը:

Իհարկե, Սովետական Միությունն այսուհետ ևս իր քաղաքականությունը կվարի՝ ելնելով այն բանից, թե ինչպես կպահեն իրենց մյուս միջուկային տերությունները, արդյոք նրանք կանգնա՞ն բանականության ձայնին և կհետևեն մեր բարի օրինակին, թե աշխարհը կհրեն թեք հարթության վրայով:

Սովետական Միության նախաձեռնությունը նպատակ ունի նաև բարձրացնել վստահության աստիճանը պետությունների հարաբերություններում: Իսկ դա հատկապես կարևոր է արդի միջազգային իրադրության պայմաններում, երբ վստահությունը հիմնավորապես խարխլվել է նրանց գործողությունների հետևանքով, ովքեր փորձում են խախտել ուժերի ստեղծված հավասարակշռությունը, ռազմական գերազանցության հասնել Սովետական Միության և նրա դաշնակիցների նկատմամբ, ի չիք դարձնել այն դրականը, որ իր հետ բերում է լարվածության թուլացման քաղաքականությունը:

Ատոմային ռումբի երբեմնի մենաշնորհի ժամանակներից ժառանգված ռազմաքաղաքական ստերեոտիպերը իրենց դարն ապրել են: Այսօրվա իրողությունները պահանջում են սկզբունքորեն այլ մոտեցում պատերազմի և խաղաղության հարցերին: Այժմ Սովետական Միության կողմից ձեռնարկվող քայլը դյուրացնում է սպառազինությունների, հատկապես միջուկային սպառազինությունների սահմանափակման ու կրճատման հետ կապված պրոբլեմների ողջ կոմպլեքսին այլ կերպ նայելու հնարավորությունը, դյուրացնում է ամբողջությամբ վերցրած զինաթափման գործը:

Այն հսկայական նվաճումները, որոնք ձեռք է բերել մարդկության ստեղծագործական ու տեխնիկական հանճարը, ժողովուրդներին հնարավորություն են ընձեռում նոր գլուխ բացելու իրենց պատմության մեջ: Արդեն այժմ իրավի անսահման հնարավորություններ կան ձեռնամուխ լինելու համամարդկային այնպիսի պրոբլեմների լուծմանը, ինչպիսին է պայքարը սովի, հիվանդությունների, աղքատության դեմ, և ուրիշ շատ պրոբլեմների լուծմանը: Բայց դրա համար անհրաժեշտ է, որ գիտատեխնիկական առաջընթացն ի սպաս դրվի բացառապես մարդկանց խաղաղ ձգտումներին:

Սովետական Միությունն առաջինը միջուկային զենք չգործադրելու պարտավորություն է ստանձնում՝ վստահ լինելով ողջամտության ուժին, հավատալով մարդկության հնարավորությանը՝ խուսափելու ինքնաոչնչացումից, ապահովելու խաղաղությունն ու առաջընթացը ներկա և գալիք սերունդների համար:

Այնուհետև կկամենայի ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի հատուկ նստաշրջանին հավաքված պետությունների ներկայացուցիչների ուշադրությունը հրավիրել հետևյալ հարցի վրա:

Ռեալ կերպով սպառազինությունների մրցավազքը կասեցնելու որոնումներում տարբեր երկրների քաղաքական ու հասարակական շատ գործիչներ վերջին ժամանակներս դիմում են միջուկային պոտենցիալները սառեցնելու, այլ խոսքով՝ դրանց հետագա մեծացումը դադարեցնելու գաղափարին: Այդ նկատառումներում ամեն բան չէ, որ միանշանակ է, բայց ամբողջությամբ վերցրած, ինչպես մեզ թվում է, դրանք գնում են ճիշտ ուղղությամբ: Դրանցում մենք տեսնում ենք իրենց բախտի համար մարդկանց խոր տագնապի արտացոլումը: Պատկերավոր ասած, մարդիկ քվեարկում են այն բանի օգտին, որ պահպանվի աշխարհում ամենաթանկագինը՝ մարդկային կյանքը:

Միջուկային զինանոցների փոխադարձ սառեցման՝ որպես դրանց կըրճատման, իսկ, վերջին հաշվով, նաև դրանց իսպառ վերացման առաջին քայլի գաղափարը մոտ է սովետական տեսակետին: Ավելին, մեր երկրից ելնում նաև այն կոնկրետ առաջարկությունները, որոնց նպատակն է կանգնեցնել



միջուկային սպառազինությունների մրցավազքը քանակական և որակական առումով:

Եվ, վերջապես, մի հարց ևս, որը, մեր կարծիքով, չի կարող անտեսել ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեան:

Այն ողջ վտանգով հանդերձ, որ իր հետ բերում է միջուկային զենքը, չի կարելի մոռանալ այն մասին, որ պետությունների զինանոցներում գոյություն ունեն մասսայական ոչնչացման նաև այլ միջոցներ, այդ թվում քիմիական զենք: Սարսափելի է մտածել, բայց չէ որ դա փաստ է, որ բավական է մի քանի կիլոգրամ թունավոր նյութ այն տասնյակ հազարավոր տոննաներից, որոնք գտնվում են որոշ երկրների զինանոցներում, մեռցնելու համար մի քանի միլիոն մարդ: Իսկ ի լրումն դրա՝ ծավալվում են քիմիական զենքի ավելի նրբացված մահաբեր տեսակներ արտադրելու նոր ծրագրեր:

Անհրաժեշտ է ամեն ինչ անել, որպեսզի քիմիական զենքի համար աշխարհում տեղ չմնա: Սովետական Միությունը դրա համոզված կողմնակիցն է: Մենք պատրաստ ենք անհապաղ համաձայնության գալու քիմիական զենքը լրիվ արգելելու և դրա պաշարները վերացնելու շուրջը:

Ողջ Սովետական Միությունը կողմնակից է առաջընթացին այն բոլոր ուղղություններում, որտեղ հնարավորություններ են ստեղծվում սպառազինությունների սահմանափակման և արմատական կրճատման համար՝ լինի դա միջուկային զենքը, մասսայական ոչնչացման զենքի մյուս տեսակները, թե սովորական զենքերը: Չկա այնպիսի զինատեսակ, որը Սովետական Միությունը պատրաստ չլիներ սահմանափակելու կամ արգելելու փոխադարձաբար:

Կկամենայի վստահություն հայտնել, որ զինաթափման հարցերին նվիրված ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի հատուկ նստաշրջանը գործուն խթան կդառնա սպառազինությունների մրցավազքի դադարեցմանը, ռեալ զինաթափման գործնական միջոցների անցնելուն: Դրանով իսկ նա կարդարացնի այն հույսերը, որ ժողովուրդները տածում են այդքան ներկայացուցչական համաժողովի նկատմամբ:

Նստաշրջանի մասնակիցներին մաղթում եմ բեղմնավոր աշխատանք ի բարօրություն ժողովուրդների, ի բարօրություն ընդհանուր խաղաղության:

Լ. ԲՐԵԺՆԵՎ

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Հունիսի 17-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կո ւսակ-
ցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:
Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան
նումի արդյունքների և պլենումի որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի գլի պլե-
քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Մինչև 1990 թվականն ընդգրկող ավոր
նակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրի և նրա իրականացման մի ամա-
ռումների մասին» զեկուցման պարունակած ցուցումների ու հանձնար ջոցա-
կանների կատարման ուղղությամբ հանրապետական կուսակցական կո արա-
կերպության խնդիրների մասին» հարցը: զմա-
Զեկուցմամբ հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցու-
թյան Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճ**
Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակ **յանը:**
ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Կ. Հարությու** ցեցին
ՀԱՄԽ-ի նախագահ ընկ. **Լ. Գ. Սահակյանը,** Հայկական ՍՍՀ գյուղա **յանը,**
տության մինիստր ընկ. **Հ. Վ. Թարջումանյանը,** ՀԿԿ Արտաշատի շր նտե-
առաջին քարտուղար ընկ. **Կ. Ա. Հովհաննիսյանը,** Աբովյանի շրջանի ջկոմի
տայք գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսության նախագահ ընկ. **Զ. Ե** Կո-
**քարյանը,** ՀԿԿ Արթիկի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Գ. Մկրտ** Զա-
Երևանի ավտոդողերի գործարանի բանվոր ընկ. **Ս. Խ. Տոնոյանը,** ՀԿԿ **յանը,**
դենիսի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ե. Եգանյանը,** Հայկակա Վար-
գյուղական շինարարության մինիստր ընկ. **Գ. Ա. Թադևոսյանը,** Ծամշ ՍՍՀ
շրջանի Արծվաբերդ գյուղի կոլտնտեսունի ընկ. **Է. Ի. Ավալյանը,** ՀԿ դինի
սիանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ծ. Բ. Դավթյանը,** ՀԼԿԵՄ Ս Սի-
կոմի առաջին քարտուղար ընկ. **Վ. Ա. Տուրյանը,** Հայկական գյուղատնտեսն-
կան ինստիտուտի խաղողագործության ամբիոնի վարիչ ընկ. **Պ. Կ. Ալեքսա-**
**յանը,** ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ս. Ռ. Մեհրաբյա-**
**նը,** Ծաղկաձորի շրջանի Ստ. Ծաղկաձորի անվան կոլտնտեսության **արյա-**
րուհի ընկ. **Ա. Մ. Սահակյանը,** ժողովրդական դեպուտատների Եղեգնաձոր թվո-
շրջանային սովետի գործկոմի նախագահ ընկ. **Ս. Պ. Թարվերդյանը,** Նաոյի
բերյանի շրջանի «Զեյթուն» սովխոզի դիրեկտոր ընկ. **Ս. Ս. Հարությունյեմ-**
Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան **յանը:**
որո-
շում:
Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կ
նիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտ մու-
ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:** ուղար
Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց ա
տանքը: շխա-



# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՈՐԾ Է

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ

### 1982 թվականի հունիսի 17-ին

*Ընկերնե՛ր:*

*Ինչպես ձեզ հայտնի է, 1982 թվականի մայիսի 24-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:*

*Պլենումը լսեց և քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի զեկուցումը «Մինչև 1990 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի ՍՍՀՄ պարենային ծրագրի և նրա իրականացման միջոցառումների մասին»:*

*Ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ խորապես ու համակողմանի վերլուծված են երկրի ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման արդյունքները, բացահայտված են դրա հետագա վերելքի հիմնական ուղղությունները, պարենային պրոբլեմի լուծման նկատմամբ նպատակային կոմպլեքսային մոտեցում մարմնավորող պարենային ծրագրի իրականացման ուղիներն ու միջոցները:*

*Ծրագրի և դրա բովանդակած միջոցառումների նպատակն է հնարավորին չափ կարճ ժամկետներում երկրի բնակչությանը հուսալի ապահովել սննդամթերքով: Դա ո՛չ միայն առաջնակարգ տնտեսական, այլև հրատապ սոցիալ-քաղաքական խնդիր է: Սովետական մարդկանց կենսական պահանջմունքների բավարարումը, ինչպես ամենայն որոշակիությամբ շեշտված է զեկուցման մեջ, եղել և մնում է մեր կուսակցության կարևորագույն ծրագրային պահանջը:*

*ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ամբողջապես և լիովին հավանություն տվեց ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ շարադրված դրույթներին ու հետևություններին, որոշեց դրանք դնել պարենային ծրագրի իրականացման, ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականության հետևողական կենսագործման ուղղությամբ կուսակցական, պետական ու տնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների պրակտիկ գործունեության հիմքում:*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պատմական պլենումից հետո անցած տարիներին որակապես նորացվեց գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան: Բարձրացավ աշխատանքի էներգազինվածությունը: Ավելացան հանքային պարարտանյութերի մատակարարումները գյուղին: Անընդ-*

* *Տպագրվում է համառոտումներով:*

հատ կատարելագործվում էին գյուղատնտեսական արտադրության պլանավորումն ու տնտեսական խթանումը։ Տասներորդ հնգամյակում, յոթերորդ հնգամյակի համեմատությամբ, գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացավ 50 տոկոսով։ Երկրում զգալիորեն ավելացավ հացահատիկի արտադրությունը։ Հացահատիկի տարեկան միջին համախառն արտադրությունը 130 միլիոն տոննայից հասավ 205 միլիոն տոննայի։ Մսի արտադրությունը (սպանդային քաշով) 9,3 միլիոն տոննայից հասավ 14,8 միլիոն տոննայի, կաթինը՝ 64,7 միլիոն տոննայից 92,7 միլիոն տոննայի, ձվինը՝ 28,7 միլիարդ հատից 63,1 միլիարդ հատի։ Ձեռք բերվեց պտուղ-բանջարեղենի արտադրանքի նշանակալի աճ. բանջարեղենինը՝ 1,6 անգամ, պտուղներինն ու հատապտուղներինը՝ 2,3, խաղողինը՝ 2 անգամ։

Դա հնարավորություն ընձեռեց, 1965 թվականի համեմատությամբ երկրի բնակչության թիվը 35 միլիոնով ավելանալու դեպքում, էապես բարձրացնելու սննդամթերքի սպառման մակարդակը։

Խոր փոփոխություններ կատարվեցին սովետական գյուղացու կյանքի և աշխատանքի պայմաններում, հաջողությամբ լուծվեցին սոցիալական շատ պրոբլեմներ։

Սակայն, ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, մենք չենք կարող բավարարվել ձեռք բերածով, չենք կարող չտեսնել, որ պարենային պրոբլեմը դեռ բնավ էլ օրակարգից հանված չէ։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը խնդիր դրեց միավորել ինչպես հենց գյուղատնտեսության, այնպես էլ նրան սպասարկող արդյունաբերության ճյուղերի, տրանսպորտի, առևտրի աշխատանքը, նրանց ամբողջ գործունեությունը ենթարկել վերջնական նպատակին՝ գյուղատնտեսական արտադրության արտադրանքի ավելացմանը, բնակչությանը պարենի բոլոր տեսակների բարձրորակ մթերքներով կայուն մատակարարման ապահովմանը, սննդի բաղադրակազմի էական բարելավմանը։

Պարենային ծրագրի հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը մշակեց միջոցառումների սիստեմ, որի նպատակն է ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման հետագա բարելավումը, տնտեսական մեխանիզմի և արտադրական հարաբերությունների կատարելագործումը, բարձրարտադրողական աշխատանքի պայմանների ստեղծումը։

Այդ սկզբունքային հիմնադրույթները կազմում են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում հաստատված մի շարք որոշումների էությունը, որոնք հրապարակված են մամուլում։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո անցած տարիներին մեր հանրապետության ժողովրդական տնտեսության ագրոարդյունաբերական սեկտորում նույնպես որակական ու քանակական զգալի տեղաշարժեր են կատարվել։

Գյուղատնտեսության հանրային սեկտորում հիմնական արտադրական ֆոնդերը 1965 թվականի համեմատ աճել են 3,8 անգամ։ Գյուղատնտեսական ձեռնարկությունների էներգետիկ կարողություններն ավելացել են 2,2 անգամ։ Արագ զարգացել են հողերի քիմիացումն ու մելիորացումը։ Գյուղատնտեսության համար հանքային պարարտանյութերի մատակարարումներն աճել են 2,8 անգամ, ոռոգելի հողատարածություններն ավելացել են 37,3 հազար հեկտարով։ Մեծացել են գյուղատնտեսական մթերքների մթերման, պահպանման ու վերամշակման հետ կապված ճյուղերի արտադրակարողությունները։

Կուսակցության ագրարային քաղաքականության ասպարեզում միջոցառումների իրականացումը տասներորդ հնգամյակում, յոթերորդ հնգամյակի համեմատ, ապահովեց գյուղատնտեսական մթերքների տարեկան միջին համախառն արտադրության ավելացումը 1,8 անգամ։ Ավելացան գյուղատնտեսական մթերքների մթերումները։

Այդ ամենը, ինչպես նաև ընդհանուր միութենական ֆոնդից մթերքների մատակարարումների ավելացումը, հնարավորություն ընձեռեց զգալիորեն բարելավելու բնակչությանը պարենի մատակարարումը։

Այսպես, 1980 թվականին, 1965 թվականի համեմատ, հանրապետության



բնակչության թիվը 924 հազարով ավելանալու դեպքում, մսի և մսամթերքների մեկ շնչին ընկնող սպառումն աճեց 74,1 տոկոսով, կաթինը և կաթնամթերքներինը՝ 59,4, ձվինը՝ 62,2, բանջարեղենինն ու բոստանային կուլտուրաներինը՝ 59,5, շաքարինը՝ 18,3, ձեթինը՝ 17,4, ձկանն ու ձկնամթերքներինը՝ 29,4 տոկոսով։ Միաժամանակ 12,5 տոկոսով նվազեց մեկ շնչին ընկնող հացի և հացամթերքների սպառումը, որը սննդի բաղադրակազմի բարելավման, բնակչության կողմից կենդանական ծագման բարձրորակ մթերքների սպառման ավելացման արդյունքն էր։

Տպավորիչ են հայ գյուղի նվաճումները սոցիալական և կուլտուրական զարգացման բնագավառում։ Մեր գյուղերը դարձել են ավելի բարեկարգ, մեր գյուղական բնակիչների կյանքը ավելի է հարստացել թե՛ նյութապես, թե՛ հոգեպես։

Այս ամենը ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականության իրագործման ասպարեզում հանրապետության կուսակցական կազմակերպության կազմակերպչական ու քաղաքական հետևողական գործունեության, Սովետական Հայաստանի հերոսական բանվոր դասակարգի, պանծալի գյուղացիության, ժողովրդական մտավորականության լարված աշխատանքի արգասիքն է։

Ընկերնե՛ր։

Դուք ծանոթ եք ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի նյութերին, պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցմանը, որտեղ արդյունքների դրական գնահատականի հետ մեկտեղ քննադատված են երկրի ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման բնագավառում ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կատարման ուղղությամբ կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների աշխատանքի թերությունները։ Այդ քննադատությունն ամբողջապես ու լիովին վերաբերում է նաև մեզ։

Մեր պլենումի խնդիրն է ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի պահանջների, ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման բովանդակած դրույթների ու հետևությունների լույսի ներքո, ագրարային-արդյունաբերական ճյուղում տիրող իրավիճակի քննադատական վերլուծության հիման վրա մշակել գործողությունների կոնկրետ ծրագիր, որի նպատակը լինի մեր աշխատանքում եղած թերությունների շուտափույթ վերացումը, պարենային ծրագրով մեր հանրապետության համար սահմանված խնդիրների լուծումը։

Մենք նշեցինք, որ հանրապետությունում արագ տեմպերով աճել է սննդամթերքների սպառումը, որն առաջին հերթին դրանց արտադրության ավելացման արդյունքն է։ Բայց **մենք չենք** կարող մոռանալ այն մասին, որ առանձին պարենային ապրանքների պահանջարկը դեռ լրիվ չի բավարարվում։ Բնակչությանն առանձին սննդամթերքներով ապահովելու գործում դեռևս գոյություն ունեցող դժվարությունները պայմանավորված են մի շարք պատճառներով։ Դրանց թվում բնակչության մեծ զանգվածի տեղաշարժը գյուղից քաղաք։ Միայն վերջին տասնհինգ տարում հանրապետության քաղաքային բնակչությունն աճել է 855,4 հազարով։ Այդ ժամանակամիջոցում հանրապետության բնակչության ընդհանուր թվում գյուղական բնակչության բաժինը կրճատվել է՝ 44 տոկոսից հասնելով 34 տոկոսի։ Քաղաքային բնակչության շեշտակի աճն ուղեկցվում է քաղաքի ու գյուղի աշխատավորների դրամական եկամուտների սիստեմատիկ ավելացմամբ։ Այդ ամենը, ինչպես նաև պարենային ապրանքների պետական մանրածախ գների կայունությունը առաջացրին ո՛չ միայն սննդամթերքների պահանջարկի զգալի մեծացում, այլև դրա բաղադրակազմի փոփոխություն, որակին ներկայացվող պահանջների բարձրացում։

Նկատելիորեն թուլացել է անձնական օժանդակ տնտեսության դերը բնակչությանը պարենով և ամենից առաջ անասնապահական մթերքներով ապահովելու գործում։ Դրա պատճառով տարեցտարի աճում են պետական առևտրական ցանցում մսամթերքների և կաթնամթերքների գնումները հենց գյուղական բնակչության կողմից։

ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներին համապատասխան, հաշվի առնելով գյուղատնտեսության ընդհանուր միութենական մասնագիտացումը՝

պետության համար ցածր ցուցանիշ է: Մի շարք շրջաններում այդ ցուցանիշն առհասարակ քննադատության չի դիմանում:

Ազիզբեկովի շրջանի տնտեսությունները տասներորդ հնգամյակում յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել են 8,4 ցենտներ հացահատիկ, Ամասիայի շրջանի տնտեսությունները՝ 8,9, Մարտունու՝ 11,3, Ապարանի՝ 11,6, Թալինի՝ 12,2, Աբովյանի՝ 12,8 ցենտներ:

Հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը շատ ցածր է նաև ջրովի հողերում: Տասներորդ հնգամյակում հանրապետությունում այն միջին հաշվով կազմել է հեկտարից ընդամենը 22,9 ցենտներ: Դա զգալիորեն ցածր է ոռոգելի հողերի պոտենցիալ հնարավորություններից: Չէ՞ որ հանրապետությունում հացահատիկի արտադրությամբ զբաղվող տնտեսությունների 19 տոկոսը ոռոգվող հեկտարից ստանում է 40-ական ցենտներ հացահատիկ, իսկ 25 տնտեսություններում ստացվում է ավելի քան 50 ցենտներ: Դրա կողքին Թալինի շրջանի տնտեսությունները «հաջողացնում են» ջրովի հողերի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 10,8 ցենտներ հացահատիկ, Ազիզբեկովի շրջանում՝ 11,2, Ամասիայի շրջանում՝ 12, Եղեգնաձորի շրջանում՝ 13,2, Ապարանի շրջանում՝ 13,7, Մարտունու շրջանում՝ 14,2, Արագածի շրջանում՝ 14,3, Աշտարակի շրջանում՝ 15, Նաիրիի շրջանում՝ 16,7 ցենտներ հացահատիկ: Ցավոք, այս թվարկումը կարելի էր շարունակել:

Թվում է, որ հացահատիկի արտադրության նկատմամբ մեզանում ստեղծվել է մոտավորապես նույնպիսի ոչ ճիշտ վերաբերմունք, ինչպես ոչ հեռու անցյալում ողջ հանրապետության գյուղատնտեսության զարգացման նկատմամբ՝ թե իբր հացահատիկի ցանքատարածությունը մեզ մոտ փոքր է, թե դրանից շատ բան չի կարելի սպասել: Կուսակցության մի շարք շրջկոմներ, շրջսովետներ, շատ տնտեսություններ ինչպես հարկն է չեն զբաղվում հացահատիկի արտադրության ինտենսիվացմամբ, չի կատարվում բերքատվության բարձրացման նպատակին ուղղված հետևողական աշխատանք:

Հանրապետությունն ամեն տարի կատարում է 90—95 հազար հեկտար աշնանացան: Թվում է, թե ամբողջ ցանքատարածությունը, որն այնքան էլ մեծ չէ, պետք է ցանվի բարձրորակ սորտային և բարձր դասի սերմացուով, սակայն միայն 30 տոկոսում է ցանվում էլիտային և առաջին ու երկրորդ վերարտադրության սերմացու, իսկ մնացած 70 տոկոսում՝ ցածր վերարտադրության սերմացու: Մի քանի տեղերում էլ ցանքի համար օգտագործում են չորրորդ և հինգերորդ վերարտադրության սերմացու, որը, բնականաբար, հանգեցնում է ցածր բերքատվության, մեծ կորուստների: Մի՞թե դա չէ նաև պատճառը, որ Թալինի շրջանի Կաթնաղբյուրի սովխոզում հացահատիկային կուլտուրաների բերքը կազմել է հեկտարից 6,8 ցենտներ, Ազիզբեկովի շրջանի Հերհեր գյուղի կոլտնտեսությունում՝ 6,5, Ապարանի շրջանի Արագածի սովխոզում՝ 6,1, Եղեգնաձորի շրջանի Մալիշկայի սովխոզում՝ 5,8 ցենտներ: Ասենք, որ մեկ հեկտարի ցանքի նորման մինչև 3 ցենտներ է:

Մինչդեռ հողագործության բարձր կուլտուրայի պայմաններում կարելի է հասնել հացահատիկային կուլտուրաների բերքատվության խիստ ավելացման, այն հասցնել հանրապետությունում միջին հաշվով հեկտարից 30—35 ցենտների, որը հնարավորություն կընձեռի լրացուցիչ ստանալու 120—150 հազար տոննա հացահատիկ: Իսկ դա շատ կարևոր է նաև անասնապահության զարգացման համար: Ահա այն խնդիրը, որն այսօր պլենումը պետք է առաջադրի հանրապետության հողագործներին:

Մի քանի խոսք հացամթերքների սպառման մասին:

Հացի և հացամթերքների կայուն և ցածր գները հանրապետության բնակչության որոշ մասի շրջանում անխնայողական վերաբերմունք են հարուցել դեպի այդ արժեքավոր սննդամթերքները: Մյուս կողմից, հանրապետության հացաթխման ձեռնարկությունները հիմնականում արտադրում են խոշոր զանգվածի հաց, խրոնիկ կերպով չկատարելով մանրակտոր հացի թխման պլանը: Բնակչությունն այդ պատճառով հաճախ գնում է ավելի շատ հաց, քան իրեն պետք է, իսկ հետո մնացած հացը դեն է նետում, որն անթույլատրելի շռայլություն է:



Հանրապետության սննդարդյունաբերության մինիստրությունը և Հայկոոպը պետք է ապահովեն մանրակտոր հացերի և խմորեղենի, ինչպես նաև հացի ազգային տեսակների թողարկումը, կոնկրետ միջոցներ ձեռնարկեն՝ խիստ բարելավելու հացի որակը, արմատավորելու ալյուրի՝ առանց տարայի պահպանումը և արտադրության առաջավոր տեխնոլոգիաների կիրառումը, հացամթերքների փոխադրման ու վաճառքի նոր ձևեր ու մեթոդներ:

Դրա հետ մեկտեղ, մենք պետք է իրականացնենք հացի նկատմամբ խնայողական վերաբերմունք պատվաստելու միջոցառումներ, լայնորեն ծավալենք հացի և հացաբուլկեղենի, ինչպես նաև բոլոր սննդամթերքների ռացիոնալ ու խնայողական օգտագործմանը նպատակամղված բացատրական աշխատանք, ընդգրկելով աշխատավորական յուրաքանչյուր կոլեկտիվ, յուրաքանչյուր դպրոց և ուսումնական հաստատություն, յուրաքանչյուր ընտանիք: Ճիշտ է ասված՝ մթերքների նկատմամբ խնայողական վերաբերմունքը, դրանց խնայողությունը սպառման բարձր կուլտուրայի հատկանիշ է:

Ընկերնե՛ր:

Վերջին տասը տարում հանրապետությունում կատարված է բանջարանոցային կուլտուրաների արտադրության աճն ապահովելու, դրանք հիմնականում ոռոգելի հողերում տեղաբաշխելու, ջերմոցային տնտեսությունը զարգացնելու, այդ ճյուղը ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելու մեծ աշխատանք:

Տասներորդ հնգամյակում բանջարեղենի տարեկան միջին արտադրությունը, իններորդ հնգամյակում ձեռք բերված մակարդակի համեմատ, աճել է 35 տոկոսով: Դրա շնորհիվ ավելացել է բանջարանոցային կուլտուրաների մեկ շնչին հասնող սպառումը: Ներկայումս բնակչության մեկ շնչին հասնող բանջարեղենի սպառմամբ մեր հանրապետությունը գրավում է երկրում առաջին տեղը: Լուծված են այնպիսի պրոբլեմներ, ինչպիսին է սեփական արտադրության հաշվին սոխի, վաղահաս կարտոֆիլի, վաղահաս կաղամբի և վարունգի պահանջմունքի բավարարումը:

Սակայն հանրապետության բանջարաբուծության վիճակի խոր, համակողմանի վերլուծությունը ցույց է տալիս, որ այստեղ ևս մենք չօգտագործված մեծ ռեզերվներ ու հնարավորություններ ունենք:

1981 թվականին տնտեսությունների 28 տոկոսը, որոնք զբաղեցնում են ցանքատարածությունների 10 տոկոսը, յուրաքանչյուր հեկտարից ստացել են 30—100 ցենտներ բանջարեղենի բերք, մինչդեռ հանրապետությունում միջին բերքատվությունը կազմում է հեկտարից 248 ցենտներ: Տնտեսությունների 35 տոկոսը որոնք զբաղեցնում են ցանքատարածությունների 26 տոկոսը, յուրաքանչյուր հեկտարից ստացել են 101—200 ցենտներ բանջարեղեն և հանրապետության տնտեսությունների միայն 6 տոկոսն է ստացել հեկտարից ավելի քան 400 ցենտներ բանջարեղեն:

Մի շարք շրջաններում այդ կարևոր ճյուղը բարձիթողի վիճակում է: Տասներորդ հնգամյակում Ապարանի և Արթիկի շրջանների տնտեսություններում բանջարանոցային կուլտուրաների միջին բերքատվությունը կազմել է հեկտարից 51 ցենտներ, Իջևանի շրջանում՝ 86, Թալինի շրջանում՝ 96, Ղափանի շրջանում՝ 112, Գորիսի շրջանում՝ 137, Շամշադինի շրջանում՝ 139 և Նոյեմբերյանի շրջանում՝ 141 ցենտներ:

Մեզ հատկապես անհանգստացնում է բանջարեղենի բերքատվության ցուցանիշների այն մեծ տարբերությունը, որն առկա է նույնանման հողակլիմայական պայմաններում գտնվող տնտեսություններում:

Համապատասխան շրջանների ու մինիստրությունների ղեկավարները պետք է անհապաղ կոնկրետ միջոցներ ձեռնարկեն շուտափույթ կերպով շտկելու գործերի վիճակը:

Այսօր խնդիր է դրվում ապահովել բանջարեղենի արտադրության ծավալների հետագա ավելացումը՝ կայունացնելով դրանց ցանքատարածությունները, այսինքն՝ արտադրության ծավալների աճն ստանալ կուլտուրաների բերքատվության բարձրացմամբ, արտադրության ինտենսիվացմամբ, մասնագիտացմամբ ու համակենտրոնացմամբ:

Բանջարեղենի արտադրության ավելացման հետ մեկտեղ մենք պետք է

հատուկ ուշադրություն նվիրենք դրա որակի բարձրացմանը և տեսականու ընդլայնմանը։

Այդ պահանջն իրավացի է, քանի որ գյուղատնտեսության, պտղաբանջարեղենի տնտեսության մինիստրությունները, կուսակցության շրջկոմները և ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները դեռևս շարունակում են անբավարար ուշադրություն նվիրել բանջարեղենի պլանավորված բոլոր տեսակների արտադրությանը։

Տասներորդ հնգամյակում առևտրական կազմակերպությունները և վերամշակող ձեռնարկությունները պլանով նախատեսվածի դիմաց պակաս են ստացել 8.462 տոննա բադրիջան, 9.444 տոննա պղպեղ, 1.076 տոննա դդմիկ, 471 տոննա բամիա, 2.703 տոննա կանաչ ոլոռ, 2.047 տոննա կանաչ լոբի։

Պետպլանը, գյուղատնտեսության, պտղաբանջարեղենի տնտեսության, սննդարդյունաբերության մինիստրությունները, կուսակցության շրջկոմները և շրջսովետների գործկոմները պետք է հասնեն այն բանին, որ հանրապետությունում բանջարաբուծությամբ զբաղվող բոլոր տնտեսությունները պարտադիր կարգով կատարեն բանջարանոցային կուլտուրաների ողջ տեսականու արտադրության ու մթերման պլանային առաջադրանքները, ապահովելով դրանց բարձր որակը։

Լուրջ մտահոգություն է առաջացնում բոստանային կուլտուրաների արտադրության և պետությանը վաճառքի ծավալները սահմանափակելու անառողջ միտումը։ Վերջին վեց տարում հանրապետությունը ոչ մի անգամ չի կատարել պետությանը բոստանային կուլտուրաներ վաճառելու պլանները։ Գյուղատնտեսության, պտղաբանջարեղենի տնտեսության մինիստրությունները, կուսակցության Արարատի, Հոկտեմբերյանի և Էջմիածնի շրջկոմներն ու համապատասխան շրջսովետների գործկոմները բարձիթողի են մատնել այդ կուլտուրաների ցանքաշրջանառության, սերմնաբուծության, դրանց վնասատուների ու հիվանդությունների դեմ մղվող պայքարի հարցերը, որը և հասցրել է այդ կուլտուրաների ցածր բերքատվության և դրանց արտադրության վնասաբերության։

Անհրաժեշտ է մշակել կոնկրետ միջոցառումներ, որոնք ապահովեն բոստանային կուլտուրաների արտադրությունը՝ հանրապետության բնակչության պահանջմունքները բավարարող ծավալով։

Հայտնի է, որ մեր հանրապետության կլիմայական պայմանները շատ նպաստավոր են պաշտպանված գրունտի բանջարաբուծության լայն զարգացման համար։ Այդ բնագավառում քիչ բան չի արված։ Այժմ հանրապետությունում գործում են 65,6 հեկտար ջերմոցներ։ Սակայն բերքատվության ցուցանիշները պակաս են պլանավորվածից և խիստ ետ են մնում երկրի առաջավոր ձեռնարկությունների ցուցանիշներից։

Նկատի ունենալով, որ նախատեսվում է ապագայում Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի և Հայաստանի ատոմային էլեկտրակայանի բազայի վրա կառուցել նոր ջերմոցներ, մեզ անհրաժեշտ է արդեն այսօր մշակել ջերմոցային կոմբինատների արտադրության կազմակերպման ու տեխնոլոգիայի բարելավման, բերքատվության բարձրացման գիտականորեն հիմնավորված հստակ ծրագիր՝ նպատակ ունենալով բավարարել ձմռան ժամանակաշրջանում հանրապետության և երկրի մի շարք արդյունաբերական կենտրոնների բնակչության թարմ բանջարեղենի պահանջմունքները։

Ընկերնե՛ր։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը վերջին տարիներս հատուկ ուշադրություն են նվիրում կարտոֆիլի արտադրության ավելացման և սեփական արտադրության հաշվին բնակչության պահանջմունքների բավարարման հարցերին։

1981 թվականին հանրապետությունում մթերվել է 100,2 հազար տոննա կարտոֆիլ, որը 16,5 հազար տոննայով ավելի է, քան միջին հաշվով տասներորդ հնգամյակում։ Սակայն այստեղ ևս բերքատվության ցուցանիշները մխիթարական չեն։ 36 տնտեսություններում ոռոգելի հողերում միջին բերքը չի գերազանցել հեկտարից 50 ցենտներից, այսինքն՝ ստացվել է գրեթե այնքան կարտոֆիլ, որքան սերմացու է ցանվել։ 53 տնտեսություններում կար-



տոֆիլի միջին բերքատվությունը կազմել է հեկտարից 51—100 ցենտներ, և միայն 12 տնտեսություններ են ստացել հեկտարից ավելի քան 200 ցենտներ կարտոֆիլ։

Տասներորդ հնգամյակի տարիներին Ղափանի շրջանի տնտեսություններում յուրաքանչյուր հեկտարից կարտոֆիլի միջին բերքատվությունը կազմել է 41 ցենտներ, Իջևանի շրջանի տնտեսություններում՝ 47, Գորիսի շրջանում՝ 59, Ապարանի շրջանում՝ 63, Թումանյանի շրջանում՝ 73, Հոկտեմբերյանի շրջանում՝ 84 ցենտներ։ Բայց չէ որ սա սիզիֆյան աշխատանք է։

Կարտոֆիլաբուծության մեջ նույնպես աչքի է զարնում արտադրության համանման պայմաններ ունեցող տնտեսություններում բերքատվության խայտաբղետությունը։ Ստեփանավանի շրջանի Գյուլագարակի սովխոզը տասներորդ հնգամյակում յուրաքանչյուր հեկտարից ստացել է միջին հաշվով 196 ցենտներ կարտոֆիլ, իսկ նույն շրջանի Կույբիշևի սովխոզը՝ 108 ցենտներ կամ կրկնակի պակաս։ Կալինինոյի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսությունում հեկտարից ստացվել է 181 ցենտներ կարտոֆիլ, իսկ Կալինինոյի սովխոզում՝ 116 ցենտներ։ Նման փաստերը, ցավոք, եզակի չեն։ Այս ամենը հանգեցնում է նրան, որ մենք ամեն տարի կորցնում ենք տասնյակ հազարավոր տոննա կարտոֆիլ։

Հանրապետության առաջավոր տնտեսությունների աշխատանքի փորձը մեզ իրավունք է տալիս պարենային ծրագրում նախատեսել կարտոֆիլի բերքը հասցնել հեկտարից առնվազն 180—200 ցենտների։ Ահա այն խնդիրը, որը պլենումը պետք է առաջադրի հանրապետության կարտոֆիլագործներին։

Ընկերնե՛ր։ Հանրապետության պարենային ծրագրում հատուկ ուշադրություն է նվիրված գյուղատնտեսության կարևորագույն ճյուղերի՝ խաղողագործության ու պտղաբուծության հետագա զարգացմանը։

Ձեզ հայտնի է, որ ՀԿԿ Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումները, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարը ամենայն սկզբունքայնությամբ բացահայտեցին խաղողագործության բնագավառի թերությունները և մշակեցին ծրագիր, որում նախատեսան այդ ճյուղի զարգացման միջոցառումներ՝ խաղողի նոր ինտենսիվ այգիներ հիմնելու, գոյություն ունեցողների նոսրությունը վերացնելու և մշակության ագրոտեխնիկական պահանջները խստիվ կիրառելու նպատակով։

Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, շրջսովետների գործկոմները, կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները որոշակի աշխատանք կատարեցին այդ կարևորագույն ճյուղերի զարգացման ասպարեզում։ Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում տնկվեցին խաղողի 5 հազար հեկտար նոր այգիներ և 5,5 հազար հեկտար պտղատու այգիներ։

1981 թվականին աճեցվեց խաղողի ռեկորդային բերք. պետությանը վաճառվեց ավելի քան 330 հազար տոննա խաղող։ Խաղողի միջին բերքատվությունը կազմեց հեկտարից 108 ցենտներ։

Սակայն այսօր էլ հանրապետության խաղողագործության և պտղաբուծության ոլորտում կան մի շարք չլուծված հարցեր ու պրոբլեմներ։ Դեռևս ցածր է բերքատվությունը։

132 տնտեսություններում խաղողի միջին բերքատվությունը չի հասնում հեկտարից 100 ցենտների, և միայն 57 տնտեսություններ են ստացել հեկտարից 150 ցենտներ և ավելի բերք։

Առաջավոր տնտեսությունների հետ միատեսակ հողակլիմայական պայմաններում գտնվող շատ տնտեսություններում խաղողի բերքատվությունը շատ ավելի ցածր է։

Գործերն ավելի վատ են պտղաբուծության ասպարեզում։ Այստեղ նույնպես նկատվում է առանձին տնտեսությունների ցուցանիշների մեծ խայտաբղետություն։

Խաղողի և պտղատու այգիների ցածր բերքատվության պայմաններում հազիվ թե կարելի է խոսել այդ ճյուղերի աշխատանքի արդյունավետության և շահութաբերության մասին։

Ընդ որում այդ տարիներին Հայգլխանասնարդի տնտեսություններում կերի գերածախսը կազմել է 60 հազար տոննա կերամիավոր, իսկ Հայթռչնարդի տնտեսություններում՝ 97,3 հազար տոննա։

1981 թվականին անասնապահական համալիրներում տավարի մսի արտադրության նախագծային կարողությունները յուրացվել են 80 տոկոսով։ Խոզի մսինը 53 տոկոսով։ Մսատու ուղղության թռչնաֆաբրիկաների նախագծային կարողությունները յուրացվել են 63 տոկոսով։

Անասնապահական համալիրների և թռչնաֆաբրիկաների աշխատանքի կազմակերպման ու պլանավորման գործում վերադաս մարմինները կատարում են սկզբունքային բնույթի սխալներ ու վրիպումներ։

Այսպես, Հայթռչնարդի բրոյլերային տնտեսությունները ամեն տարի հիբրիդային ինկուբացիոն ձվի սուր պակաս են ունենում, որի հետևանքով վիժեցվում է թռչունների վաճառքի պլանի կատարումը։ Դա պայմանավորված է նրանով, որ սիստեմում չկա երկրորդ կարգի վերարտադրիչ ֆաբրիկա բրոյլերային թռչնաֆաբրիկաներին հիբրիդային ձու մատակարարելու համար։

Փոխանակ Հայթռչնարդի սիստեմի վերարտադրող տնտեսություններում կազմակերպելու հիբրիդային ձվի արտադրությունը, գյուղատնտեսության մինիստրությունն ամեն տարի մեծ դժվարությամբ մյուս հանրապետություններից թռչնաֆաբրիկաների համար ներմուծում է 8 միլիոն ինկուբացիոն ձու։

Թերություններ կան նաև միջտնտեսային ձեռնարկությունների գործունեության ոլորտում։

Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները և շրջսովետների գործկոմները պարտավոր են ամենակարճ ժամկետում հասնել այն բանին, որ համալիրների, թռչնաֆաբրիկաների և միջտնտեսային ձեռնարկությունների արտադրակարողությունները լրիվ յուրացվեն և ապահովեն պետական պլանների կատարումը։

Կարծում ենք, որ Մինիստրների խորհուրդը անդուլ վերահսկողության տակ կառնի այս գործը և պետական անհրաժեշտ կարգուկանոն կհաստատի անասնապահության այս կարևոր ուղղությունում։

Անթույլատրելի է, որ որոշ տեղերում թուլացրել են ուշադրությունը կոլտնտեսությունների և սովխոզների ֆերմաներում խոզի, թռչնի մսի և ձվի արտադրության կազմակերպման նկատմամբ։

Կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է մեծ քանակությամբ մեռուններ պահեն, որպեսզի խոզի մսի արտադրության իրենց պլանները կատարելու հետ մեկտեղ պայմանագրային հիմունքներով խոճկորներ վաճառեն բնակչությանը՝ բտելու և պետությանը վաճառելու համար։ Չէ որ նրանց համար մերուն պահելը հեշտ է, քան մասնավոր սեկտորում, իսկ խոճկորներ կարող է աճեցնել յուրաքանչյուր ընտանիք։ Փոխհարաբերությունների այդպիսի սիստեմի արմատավորումը շահավետ կլինի թե՛ տնտեսության, թե՛ բնակչության համար։

Մենք պետք է ավելի լրիվ օգտագործենք նաև ոչխարաբուծության ռեզերվները դրա հետագա ինտենսիվացման միջոցով։ Անհրաժեշտ է շեշտակի ավելացնել մաքիների տեսակարար կշիռը հոտում, հատկապես այնտեղ, որտեղ մասնակիորեն **կրճատվում է ոչխարների գլխաքանակը**, ամենուրեք կազմակերպել գառների **ինտենսիվ** բտումը, հոտի վերարտադրության համար ոչ պիտանի մատղաշի **ողջ գլխաքանակի** ինտենսիվ բտումը և նույն տարում պետությանը վաճառել առնվազն 35 կիլոգրամ կենդանի քաշով ոչխարներ։

Հարկ է նաև բարձրացնել ոչխարների կաթնային մթերատվությունը։

Մսի պետական ռեսուրսների ավելացման մեծ ռեզերվ է անասունների և թռչունների ներտնտեսային անհարկի ծախսումների կրճատումը։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ վերջին տարիներս հանրապետության տնտեսություններում այդպիսիք որոշ չափով կրճատվել են։ Սակայն շատ տեղերում դեռևս լինում է ցածր քաշ ունեցող անասունների, հատկապես մատղաշի, մեծ չափերի հասնող մորթ ներտնտեսային կարիքների համար։ Անցյալ տարի հանրապետության կոլտնտեսություններում, միջտնտեսային ձեռնարկություննե-



րում և պետական տնտեսություններում մորթվեց հազարավոր գլուխ խոշոր եղջերավոր անասուն, ոչխար և այծ, խոզ։ Ընդ որում տեղերում խրացված խոշոր եղջերավոր անասունների մեկ գլխի միջին կենդանի քաշը կազմեց 134 կիլոգրամ, ոչխարներինն ու այծերինը՝ 19 կիլոգրամ, խոզերինը՝ 19,5 կիլոգրամ։

Հաշվարկները ցույց են տալիս, որ տեղերում այս պատճառով հանրապետության կոլտնտեսություններն ու պետական տնտեսությունները կորցրել են ավելի քան 4 հազար տոննա միս։

Ամեն մի նման դեպք պետք է դիտվի որպես պետական պլանային կարգապահության կոպիտ խախտում, և այդ գործում պատշաճ կարգուկանոն հաստատելու ողջ պատասխանատվությունը պետք է դրվի շրջանների ղեկավարների վրա։

Այս տարի պլանով նախատեսված է պետությանը վաճառել 108 հազար տոննա միս։ Այդքան միս մենք մթերելու ենք առաջին անգամ։ Դա շրջանների բոլոր ղեկավարներից, գյուղատնտեսության և մյուս մինիստրություններից պահանջում է ավելի ակտիվ աշխատանք կատարել անասնապահության ասպարեզում, բարձրացնել տեղական կադրերի պատասխանատվությունը պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում։

Ընկերնե՛ր։

Մենք պետք է շատ աշխատենք կաթի արտադրության հետագա ավելացման համար։

Հանրապետությունում կաթնային անասնապահության որակական ցուցանիշները դեռևս ցածր են։ Դանդաղ է աճում կովերի կաթնատվությունը, բարձր է ստերջության տոկոսը, փաստորեն չեն նվազում աշխատանքի և կերի տեսակարար ծախսումները, ուրեմն և չի իջնում արտադրանքի ինքնարժեքը։

Կաթի արտադրությամբ զբաղվող տնտեսությունների 25 տոկոսում կովերի միջին կաթնատվությունը կազմում է 1.000-ից մինչև 1.649 կիլոգրամ և միայն տնտեսությունների 7 տոկոսն է ստանում 3.000 կիլոգրամ և ավելի կաթ։

Այստեղ նույնպես աչքի են զարնում հողակլիմայական միանման պայմաններում գտնվող տնտեսություններում անասունների մթերատվության մեծ խայտաբղետությունն ու խիստ տատանումները։ Այսպես, Աբովյանի շրջանի Կոտայք գյուղի Կույբիշևի անվան կոլտնտեսությունը 1981 թվականին յուրաքանչյուր կովից ստացավ 4.228 կիլոգրամ կաթ, իսկ նույն շրջանի Կամարիսի սովխոզը՝ ընդամենը միայն 1.863 կիլոգրամ։

Լրիվ չեն օգտագործվում պետական անասնապահական համալիրների և խոշոր մեքենայացված անասնապահական ֆերմաների կաթի արտադրության հնարավորությունները։

Մենք պետք է առավելագույն չափով օգտագործենք բոլոր շրջաններում, բոլոր ֆերմաներում ու բրիգադներում կաթի արտադրությունն ավելացնելու ռեզերվներն ու հնարավորությունները, և արդեն մինչև ընթացիկ հնգամյակի վերջը մեկ կովի կաթնատվությունը հասցնելու 2.300—2.400 կիլոգրամի։

Կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում անասնապահական մթերքների արտադրության աճի դանդաղ տեմպերի գլխավոր պատճառներից մեկը կովերի գլխաքանակի դանդաղ ավելացումն է։ Կովերի գլխաքանակի ավելացման կարևորագույն գործը փաստորեն ինքնահոսի է մատնված։ Ոչ պետպլանը, ոչ գյուղատնտեսության, պտղաբանջարեղենի տնտեսության մինիստրությունները, անտառտնտեսկոմը, ոչ էլ կուսակցության շրջկոմներն ու շրջսովետների գործկոմները այդ հարցով լրջորեն չեն զբաղվում, չունեն գործողությունների գիտականորեն հիմնավորված, կոնկրետ նպատակային ծրագիր։ Վերջին տասը տարում Վարդենիսի շրջանում կովերի գլխաքանակը կրճատվել է 339-ով, Ամասիայի շրջանում՝ 147-ով, Ապարանի շրջանում՝ 52-ով, Սպիտակի շրջանում՝ 45-ով, իսկ Արագածի, Արարատի և Թումանյանի շրջաններում կովերի գլխաքանակի աճը կազմել է ընդամենը 30-ից մինչև 114 գլուխ։ Ինչպես ասում են՝ մեկնաբանություններն ավելորդ են։

Մի՞թե կարող է անասնապահության ինտենսիվացմանը նպաստել այն հանգամանքը, երբ շրջանների մեծ մասում պատշաճ ուշադրություն չի նվիր-

վում ընդհանուր հոտի մեջ կովերի տեսակարար կշռի ավելացմանը։ Վերջին տասը տարում հանրապետության հանրային նախրում կովերի տեսակարար կշիռը գրեթե անփոփոխ է մնում և չի գերազանցում 32—33 տոկոսը, իսկ Արագածի, Մարտունու, Անիի, Ղափանի և այլ շրջանների մի շարք տնտեսություններում՝ դրանից էլ պակաս է։

Կաթի և մսի արտադրությունն ու մթերումներն ավելացնելու նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը միջոցառումներ են մշակել կովերի գլխաքանակը 1985 թվականին հնգամյա պլանով նախատեսված 184 հազարի դիմաց 200 հազարի հասցնելու, իսկ մինչև 1990 թվականը՝ 220 հազարի հասցնելու նպատակով։ Նախատեսվում է նախրում կովերի տեսակարար կշիռը հասցնել 40—41 տոկոսի, իսկ քաղաքամերձ գոտիներում՝ 55—60 տոկոսի, 100 կովի հաշվով տարեկան կաթնատու նախիր փոխադրել 20—25 երինջ։

Այդ ցուցանիշների ապահովումը գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունների, անտառտնտեսկոմի, կուսակցության շրջկոմների, շրջսովետների գործկոմների, անասնապահության բոլոր աշխատողների անմիջական պարտքն է։

Ահա արդեն մի քանի տարի է, ինչ հանրապետությունում կովերի ստերջությունը հասնում է 22—25 տոկոսի, մաքիներինը՝ 18—20 տոկոսի։ Հարյուր մերունից տարեկան ստացվում է 1.000—1.200 խոճկոր։ Այդ հանգեցնում է այն բանին, որ մենք ամեն տարի պակաս ենք ստանում մեծ քանակությամբ միս և կաթ։

Շատ տնտեսություններում ու շրջաններում դրությունն է՛լ ավելի անբավարար է։ Կովերի ստերջությունն անցյալ տարի Սպիտակի շրջանի տնտեսություններում հասավ 40 տոկոսի, Ամասիայի շրջանում՝ 39, Ստեփանավանի շրջանում՝ 36, Կալինինոյի շրջանում՝ 32, Կամոյի շրջանում՝ 33, Գուգարքի և Սիսիանի շրջաններում՝ 30 տոկոսի։

Ժամանակն է վերջ տալու այդպիսի անտնտեսվարությանը և կոնկրետ միջոցներ ձեռնարկելու մայրական գլխաքանակի ստերջությունը նվազագույնի հասցնելու համար։ Այդ նպատակով հարկավոր չեն լրացուցիչ միջոցներ, շենքեր ու կեր։ Հարկավոր է բարձր կազմակերպվածություն, պատասխանատվություն, կարգապահություն։

Անհրաժեշտ է առավելագույն միջոցներ ձեռնարկել անասունների և թռչունների տոհմային և մթերային հատկությունների առավել արագ բարելավման, հոտի վերարտադրության ճիշտ կազմակերպման համար։

Գյուղատնտեսության և պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունները պետք է մշակեն և հաստատեն միջոցառումներ կթվոր-կթվորուհիների, անասնապահների, անասնապահության բրիգադավարների, սերմնավորող տեխնիկների, անասնաբույժների և զոոտեխնիկների բարոյական և նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով։ Ընդ որում անհրաժեշտ է ուշադրություն նվիրել նրանց աշխատանքը նաև բնամթերքով՝ հորթով, գառով, խոճկորով վարձատրելուն։

Մենք պետք է բարելավենք հանրապետության տնտեսություններում կովանոցների տեղաբաշխման և կառուցման առկա իրավիճակը։

Պրակտիկան ցույց է տալիս, որ մեր հանրապետության պայմաններում համալիրների ստեղծման ասպարեզում հսկայամոլությունը անցանկալի հետևանքների է հանգեցնում։

Մենք պետք է կառուցենք տարբեր տիպաչափերի կովանոցներ՝ սկսած 100 և ավելի տեղով։ Յուրաքանչյուր տնտեսության կոնկրետ պայմաններից ելնելով՝ պետք է տեղադրել կովանոցի ամենաօպտիմալ տիպաչափը։ Միաժամանակ պետք է ավելի ակտիվ և գործուն զբաղվել առկա ֆերմաների վերակառուցման ու արդիականացման հարցերով, որտեղ մենք ստանում ենք և դեռ երկար կստանանք անասնապահության մթերքների հիմնական մասը։

Պարենային ծրագրում անասնապահական մթերքների արտադրության ծավալներն ավելացնելու միջոցառումների հետ մեկտեղ մշակվել են դրանց որակի բարելավման միջոցառումներ։



Ընկերնե՛ր։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումը ուշադրություն հրավիրեց այն բանի վրա, որ անհրաժեշտ է համակողմանի ամրապնդել կերի բազան, որն անասնապահության զարգացման հիմնական նախապայմանն է։ Ինչպես հայտնի է, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1981 թվականի հուլիսյան պլենումը մշակեց դաշտային և մարգագետնաարոտավայրային կերարտադրության հետագա ինտենսիվացման, բոլոր կերահանդակների արդյունավետության բարձրացման, ցանքատարածությունների կառուցվածքի բարելավման, արտադրության մեջ բարձր բերքատու սորտերի ու հիբրիդների ներդրման, կերի կուտակման, պահպանման ու նախապատրաստման առաջավոր տեխնոլոգիաների կիրառման ընդարձակ ծրագիր։

Տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարվա արդյունքները ցույց են տալիս, որ կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների հետևողական աշխատանքի շնորհիվ նկատելիորեն ամրապնդվել է անասնապահության կերի բազան։

Սակայն կերարտադրության ոլորտում կան լուրջ թերություններ։ Շատ շրջաններում դանդաղ են ներդրվում կերի կուտակման և անասունների կերակրման առաջավոր տեխնոլոգիաները, պատշաճ ուշադրություն չի նվիրվում կերաբաժինների հաշվեկշռվածությանը ըստ սպիտակուցի և մյուս բաղադրիչների, կորուստներ են լինում կերի կուտակման, պահպանման ու վերամշակման ժամանակ, չկա անհրաժեշտ հսկողություն կուտակվող կերի որակի նկատմամբ, լինում են սննդարար նյութերի մեծ կորուստներ։ 1981 թվականին ստացված 240 հազար տոննա խոտից երրորդ կարգի և ոչ կարգային էր 39 տոկոսը։ Միայն կերի ստացված քանակության մեջ կորուստները կազմեցին 160 հազար տոննա կերամիավոր։

Գյուղատնտեսության մինիստրությունը չի ապահովել կերի որակի վերահսկողության շրջանային լաբորատորիաների կազմակերպումը։ Վատ են գործում կերի արտադրամասերը, որոնց թիվը բացահայտորեն անբավարար է։

Մի շարք շրջաններում դեռևս անբավարար են իրականացվում կերի արտադրության ինտենսիվացման միջոցառումները։ Բոլոր տնտեսությունները չէ, որ ապահովել են ջրովի հողերում կերային կուլտուրաների ցանքերն ընդլայնելու, կորնգանի և առվույտի տարածություններն ավելացնելու, բազմամյա և մարգագետնաարոտային խոտաբույսերի սերմացուի արտադրության, խոտհարքներն ու արոտավայրերը օրգանական և հանքային պարարտանյութերով պարարտացնելու առաջադրանքի կատարումը։ Դանդաղ են ներդրվում այնպիսի տեխնոլոգիական պրոցեսներ, ինչպիսին են՝ խոտի բրիկետավորումը, պահածոյացումը, վիտամինային խոտալյուրի արտադրությունը։ Դանդաղ տեմպերով են իրականացվում կերարտադրությունը որպես ինքնուրույն ճյուղ առանձնացնելու միջոցառումները։

Այդ ամենը նվազեցնում է կերարտադրության արդյունավետությունը, կերի փոխհատուցումը։

Անբավարար են կերի պահեստարանների շինարարության, այդ թվում նաև շեֆական կազմակերպությունների կատարած շինարարության տեմպերը։

Ինչպես հիշում եք, անցյալ տարի Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը խնդիր դրեց, որ շեֆական կազմակերպությունները պետք է կառուցեն կերի պահեստարաններ։ Հանրապետության մինիստրությունները, արդյունաբերական ձեռնարկությունները ստացան կոնկրետ առաջադրանքներ։ Ոչ բոլորը, սակայն, պատասխանատու վերաբերմունք ցույց տվին այդ հանձնարարությանը։ Արդյունաբերական շինարարության, գյուղական շինարարության, շինանյութերի արդյունաբերության, ավտոմոբիլային ճանապարհների շինարարության ու շահագործման մինիստրությունների մի շարք ձեռնարկություններ չեն կատարել սահմանված առաջադրանքները։

Կարծում ենք, որ համապատասխան կուսակցական կոմիտեները և սկզբնական կուսակցական կազմակերպությունները պատշաճ գնահատական կտան

այս փաստերին։ Կենտկոմի քարտուղարությունն էլ իր հերթին պետք է անհրաժեշտ պահանջկոտություն և հետևողականություն ցուցաբերի։

Արդյունաբերական, շինարարական և տրանսպորտային ձեռնարկությունների հնարավորությունները մեծ են, և նրանք կարող են առանց հիմնական գործունեությանը վնասելու օգնել կոլտնտեսություններին և սովխոզներին։

Ընթացիկ տարում պետք է կուտակել 835 հազար տոննա խոտ, 790 հազար տոննա սիլոս, 480 հազար տոննա սենաժ, 280 հազար տոննա ծղոտ, 130 հազար տոննա կերի արմատապտուղ։ Դա ավելին է, քան անցյալ տարի։ Բայց դա էլ մենք պետք է գերազանցենք։ Դա է պահանջում պարենային ծրագրով կաթի և մսի արտադրության ավելացումն ապահովելու խնդիրը արդեն այս տարի։

Ընկերնե՛ր։

Հանրապետության բնակչությանը անասնապահական մթերքների մատակարարումը բարելավելու համար մենք պետք է մեծ դեր վերապահենք նաև կոլտնտեսականների, բանվորների և ծառայողների անձնական օժանդակ տնտեսություններին։ Բավական է ասել, որ բնակչության անձնական տնտեսություններում պահվում է հանրապետության խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր գլխաքանակի 33,7 տոկոսը, կովերի՝ 43,5, խոզերի՝ 32 և ոչխարների ու այծերի՝ 40,5 տոկոսը։

Անհրաժեշտ է նշել, որ հանրապետությունում քիչ բան չի արված անձնական օժանդակ տնտեսությունների զարգացման համար։ 1981 թվականին բնակչության մոտ եղած խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, 1970 թվականի համեմատ, ավելացավ 26,1 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 18,8 տոկոսով, խոզերի գլխաքանակը՝ 2,2 անգամ, ոչխարներինն ու այծերինը՝ 27 տոկոսով։ Միայն անցյալ տարի, նախորդ տարվա համեմատ, բնակչության անձնական տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 12 հազարով, որից կովերինը՝ 5,3, խոզերինը՝ 3,8, ոչխարներինը և այծերինը՝ 38 հազարով։

Սակայն այդ կարևոր գործում դեռևս լուրջ թերություններ կան։ Հանրապետությունում ավելանում է անասուններ չունեցող տնտեսությունների տեսակարար կշիռը։ 1982 թվականի հունվարի 1-ի դրությամբ կոլտնտեսականների տնտեսությունների 53 տոկոսը չի պահում ոչ մի անասուն, այդ տնտեսությունների 61 տոկոսը չունի խոշոր եղջերավոր անասուն, 64 տոկոսը չունի կով, 95 տոկոսը չունի խոզ և 68 տոկոսը չունի ոչխար։ Արարատյան հարթավայրի շրջաններում կոլտնտեսականների տնտեսությունների 70—80 տոկոսը ոչ մի անասուն չի պահում։

Լուրջ թերություններ կան նաև բուսաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում։

Արարատյան հարթավայրի մի շարք տնտեսություններում առանձին բնակիչներ տնամերձ հողամասերում արմատախիլ են արել մեր ժողովրդի համար ավանդական կուլտուրաները՝ խաղողի այգիները, ծիրանի և դեղձի տնկարկները։

Կուսակցության շրջկոմները և շրջսովետների գործկոմները պետք է հասնեն այն բանին, որ բնակչության տնամերձ հողամասերում աճեցվեն միայն գյուղատնտեսական պարենային կուլտուրաներ։ Այդ են հրամայաբար պահանջում բնակչության պարենային մատակարարումը բարելավելու շահերը։

Պարենային ծրագրում մշակված են քաղաքացիների անձնական օժանդակ տնտեսությունների վարման, կոլեկտիվ այգեգործության ու բանջարաբուծության և բնակչությունից գյուղատնտեսական մթերքների գնումների կազմակերպման գործում եղած թերությունների վերացման միջոցառումներ։ Մշակված են բնակչությանը մատղաշ անասուններ ու թռչուններ վաճառելու և անձնական օժանդակ տնտեսություններում անասուններ պահող բնակիչներին խոտհարքներ և արոտներ հատկացնելու միջոցառումներ։

Կուսակցության շրջկոմների ու շրջսովետների գործկոմների, գյուղատնտեսական մարմինների և արհմիութենական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է պայմաններ ստեղծել, որպեսզի գյուղում բնակվող յուրա-



քանչյուր ընտանիք կարողանա ունենալ տնամերձ հողամաս, պահել անասուններ և թռչուններ։

Էական թերություններ կան նաև կոլեկտիվ այգեգործության և բանջարաբուծության ասպարեզում։ Մի շարք տեղերում կոլեկտիվ այգեգործության կազմակերպման գործում կան լուրջ թերություններ և խեղաթյուրումներ։ Խախտելով այգեգործական ընկերությունների կանոնադրությունը՝ դրանց մեջ հաճախ ընդգրկվում են մարդիկ, որոնք աշխատանքային առնչություն չունեն ձեռնարկությունների հետ։ Այգեգործական ընկերությունների առանձին անդամներ, վարակված մանրբուրժուական, քաղքենիական սպառողական հոգեբանությամբ, բռնել են տնտեսական ուռճացման ուղին, հատկացված հողամասերում ամառային տնակների փոխարեն կառուցում են խոշոր ամառանոցներ՝ ավտոտնակներով և այլ շինություններով, բնավ չարտադրելով որևէ բուսաբուծական մթերք։ Իսկ չէ որ կոլեկտիվ այգեգործության զարգացումը մեզանում հետապնդում է մի նպատակ՝ ավելացնել գյուղատնտեսական մթերքների ռեսուրսները։

Կոլեկտիվ այգեգործության զարգացման գործում լուրջ թերությունների և թերացումների պատճառը ամենից առաջ այն է, որ որոշ շրջանային ու քաղաքային սովետական ու արհմիութենական մարմիններ անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկել ապահովելու այդ հարցերի վերաբերյալ կուսակցության և կառավարության որոշումների անշեղ կատարումը, փաստորեն ինքնահեռացել են սահմանված նորմաների և կանոնների կիրառման վերահսկողությունից, պատշաճ պայքար չեն մղում պետական կարգուկանոնը խախտողների դեմ։ Իսկ կուսակցության մի շարք շրջկոմներ թույլ են վերահսկում այդ հարցերում սովետական, արհմիութենական և տնտեսական մարմինների աշխատանքը, ժամանակին պատշաճ սկզբունքային գնահատական չեն տալիս կատարված խախտումներին ու չարաշահումներին։

Կենտկոմի հանձնարարությամբ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը համապատասխան միջոցառումներ է ձեռնարկում վերացնելու կոլեկտիվ այգեգործության ասպարեզում եղած թերությունները։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը կարևոր նշանակություն են տալիս արդյունաբերական, տրանսպորտային և մյուս ձեռնարկությունների, կազմակերպությունների ու հիմնարկների օժանդակ գյուղական տնտեսությունների զարգացմանը և դրանցում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը՝ բանվորների ու ծառայողների հասարակական սնունդը բարելավելու նպատակով։

Այժմ հանրապետությունում գործում են նման տիպի ավելի քան 80 օժանդակ գյուղական տնտեսություններ։

Աշխատանքի դրական փորձ է կուտակվել Հրազդանի շրջանի, Հայկոոպի, առևտրի, սննդարդյունաբերության մինիստրությունների և այլ գերատեսչությունների մի շարք ձեռնարկություններում։

1981 թվականին, օրինակ, Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի օժանդակ տնտեսությունում արտադրվել է 60 տոննա խոզի միս։ Մեկ կիլոգրամ մսի վրա ծախսվել է 3,5—4 կիլոգրամ կերամիավոր։

Կուսակցության շրջկոմները և շրջսովետների գործկոմները պետք է ավելի ակտիվ իրագործեն անհրաժեշտ միջոցառումներ այդ տնտեսությունների գործունեության հետագա զարգացման ու բարելավման նպատակով։

Ընկերնե՛ր։

Անասնապահական մթերքների արտադրության հարաճուն մասշտաբների պայմաններում բացառիկ կարևոր նշանակություն է ստանում համակցված կերի արդյունաբերության հստակ աշխատանքը։ Վերջին տարիներս հանրապետության համակցված կերի արդյունաբերության ձեռնարկությունները հիմնականում կատարում են արտադրության պլանները։ Սակայն, արտադրության ծավալների ավելացման հետ մեկտեղ, մթերումների մինիստրությունը չի ապահովում պատշաճ որակի, բարձր սննդարարության ու հաշվեկշռվածության կերերի թողարկումը։ Աղքատիկ է դրանց տեսականին։ Այդ արդյունաբերության ձեռնարկությունների աշխատանքում արմատական բարելավում չի

նկատվում։ Այստեղ առաջվա պես կատարվում են համակցված կերի պատրաստման տեխնոլոգիական պրոցեսի կոպիտ խախտումներ, չկա պատշաճ վերահսկողություն թողարկվող արտադրանքի որակի նկատմամբ, հաճախ խախտվում է գյուղատնտեսական կենդանիների տարիքային տարբեր խմբերի համար սահմանված բաղադրակազմը։

Համակցված կերի գործարաններում չի կազմակերպված հումքի և պատրաստի արտադրանքի պատշաճ հաշվառում, գոյություն ունեն սոցիալիստական սեփականության հափշտակման և վատնման փաստեր, որոնց դեմ մինիստրության սիստեմում անհրաժեշտ պայքար չի կազմակերպված։

Ընկերնե՛ր։ Վերջին տարիներս հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել ձկնատնտեսության զարգացման և բնակչությանը ձուկ և ձկնամթերքներ մատակարարելու գործը բարելավելու նպատակով։

Բնական ջրամբարներում ձկան որսի և ապրանքային լճակային տնտեսություններում ձկան արտադրության ընդհանուր ծավալը վերջին հինգ տարում մեծացել է 2,4 անգամ։

Ձկնատնտեսության միավորման ձեռնարկությունները 1981 թվականին 1,8 հազար հեկտար ջրատարածությունից ստացել են 3,3 հազար տոննա ձուկ, յուրաքանչյուր հեկտարից ապահովելով 18,0 ցենտներ արտադրանքի ստացում, 1975 թվականի 15,8 ցենտների փոխարեն։

Դրա հետ միասին հարկ է նշել, որ հանրապետության ձկնատնտեսությունը դանդաղ տեմպերով է զարգանում։ Ապրանքային լճային տնտեսությունների կարողություններն անարդյունավետ են օգտագործվում։

Հանրապետության ձկնաբուծական տնտեսությունները դեռևս անբավարար են ապահովված արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացման միջոցներով, գերակշռում է ձեռքի աշխատանքը։

Հանրապետությունում ձկան արտադրությունն ավելացնելու հնարավորությունները մեծ են։ Տեղական ջրամբարներում ձկնաբուծության լավ կազմակերպման դեպքում, լճակային ձկան որսը 1990 թվականին կարելի է հասցնել 8—10 հազար տոննայի։

Այդ ցուցանիշներին հասնելու համար նախատեսվում է բարելավել հանրապետության բնական և արհեստական ջրամբարներում արժեքավոր ձկնատեսակներ բազմացնելու գործը, 1983—1985 թվականներին կառուցել Սևանի իշխանի վերարտադրության ձկնաբուծարան 2,5 միլիոն ձկնիկ թողարկելու կարողությամբ և վերակառուցել մի շարք ձկնաբուծարաններ։

Հանրապետության մսի ռեսուրսների համալրման գործում կարող են էական տեղ գրավել ճագարաբուծությունը, մսատու այլ կենդանիների բազմացումը։

Կարծում ենք, որ կոլտնտեսություններից ու պետական տնտեսություններից բացի այդ գործով կարող են հաջողությամբ զբաղվել հանրապետության առանձին ձեռնարկություններ ու կազմակերպություններ, դպրոցները և բնակչությունը։

Պարենային ռեսուրսների համալրման նպատակով մենք պետք է ավելի կոնկրետ զբաղվենք նաև մի այնպիսի կարևոր ճյուղով, ինչպիսին է մեղվաբուծությունը։

Մեղվաբուծության հետագա զարգացման և մեղրի արտադրության ավելացման՝ մեր հանրապետությունում եղած հնարավորությունները բացահայտորեն անբավարար են օգտագործվում։ Ավելին, որոշ տնտեսություններում կրճատվել է մեղվաընտանիքների թիվը, անհիմն կերպով վերացվել են մեղվանոցները։

1981 թվականին հանրապետության տնտեսություններում մեղվաընտանիքների թիվը 1975 թվականի համեմատ կրճատվել է մոտ 23 հազարով։ Դա հանգեցրեց մեղրի արտադրության խիստ կրճատման և բացասաբար անդրադարձավ գյուղատնտեսական կուլտուրաների փոշոտման վրա։

Վերջին տասը տարում հանրապետությունում մեղրի ապրանքային քանակը ամբողջապես կազմել է մեկ փեթակից միջին հաշվով ընդամենը 1—2 կիլոգրամ։



Անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկվում մեղվաբուծության նորմալ զարգացման նյութատեխնիկական բազա ստեղծելու ասպարեզում։ Պատշաճ ուշադրություն չի հատկացվում սիրողական մեղվաբուծության զարգացումը խթանելու հարցերին։

Հանրապետությունում ծանր պայմաններ են ստեղծվել մեղվաբուծության համար՝ մեղուների հիվանդությունների լայն տարածման պատճառով։

Անհրաժեշտ է, որ Մինիստրների խորհուրդը հատուկ քննարկման առարկա դարձնի այդ կարևոր ճյուղի զարգացման հարցը։

Հանրապետությունում մեծ հնարավորություններ կան սնկի արտադրության համար։ Այդ ուղղությամբ լավ փորձ ունեն Հայկոոպի, անտառտնտեսկոմի ձեռնարկությունները, բնակչությունը։ Հաշվարկները ցույց են տալիս, որ նախկին հանքահորերի և խորշերի օգտագործման դեպքում առանց էական կապիտալ ներդրումների, առանց վառելիքի և նյութերի մեծ ծախսումների հնարավոր կլինի արտադրել հազարավոր տոննա շամպինիոն։

Պարենային ռեսուրսների ավելացման մարզում մեծ անելիքներ ունի անտառային տնտեսության պետական կոմիտեն։ Մեր անտառներում կան վայրի պտուղների, հատապտուղների և սնկերի մեծ պաշարներ։ Դրանց թվում այնպիսի արժեքավոր պտուղներ, ինչպիսին են փշարմավը, հոնը, արքայամորին, մոշը և այլն, էլ չենք ասում արժեքավոր դեղաբույսերի մասին։

Սակայն հանրապետության անտառային հարստությունները դեռևս խիստ անբավարար, իսկ որոշ անտառազանգվածներում կարելի է ասել բարբարոսաբար են օգտագործվում։

Հատկապես կուզենայի անդրադառնալ ընկույզի արտադրությանը։ Նախնական հաշվումների համաձայն, հանրապետությունում հնարավորություն կա տարեկան արտադրելու 15—20 հազար տոննա ընկույզ և դրանով իսկ ո՛չ միայն բավարարելու հանրապետության պահանջմունքները, այլև առաքելու նրա սահմաններից դուրս։ Մինչդեռ 1968—1980 թվականներին հանրապետության կոլտնտեսություններում, սովխոզներում և պետական տնտեսություններում ընկույզի տարեկան համախառն բերքը տատանվել է 205—49 տոննայի սահմաններում, այսինքն՝ պակասել է։ Այդ ժամանակամիջոցում ընկույզի միջին բերքատվությունը հասել է հեկտարից 5,4—1,3 ցենտների, այսինքն՝ մոտ այնքան, որքան մի քանի հասուն ծառեր կարող են տալ լավ խնամքի դեպքում։

Հանրապետությունում արդեն սկսվել են ընկուզենու այգիներ հիմնելու և խճուղիների երկայնքով ընկուզենիներ տնկելու աշխատանքներ։ Անհրաժեշտ է ընդլայնել և մեծ թափ հաղորդել այդ գործին։ Այստեղ մենք շատ սպասելիքներ ունենք մեր կոմերիտմիությունից։

Հանրապետության պարենային ծրագրում միջոցառումներ են նախատեսված ձեթի ու մարգարինի, երշիկեղենի և մյուս մսամթերքների, հրուշակեղենի ու մակարոնեղենի, սննդի կոնցենտրատների, կոնյակի, խաղողի գինու, գարեջրի և ոչ ոգելից խմիչքների, կաթնարդյունաբերության մթերքների արտադրության ավելացման կարողություններ ստեղծելու նպատակով։ Հատուկ ուշադրություն է նվիրվում սննդամթերքների թողարկմանը երեխաների, ինչպես նաև բուժպրոֆիլակտիկ և կազդուրիչ հիմնարկների մատակարարման համար։

Նախատեսվում է ընդլայնել սննդամթերքի ազգային տեսակների ծավալն ու տեսականին։

Հանրապետության պետպլանը, գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի տնտեսության, մսեղենի-կաթնեղենի ու սննդի արդյունաբերության մինիստրությունները, անտառային տնտեսության պետական կոմիտեն, Հայկոոպը, մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները, կուսակցության շրջկոմներն ու շրջգործկոմները, կոլտնտեսություններն ու սովխոզները, ձեռնարկություններն ու կազմակերպությունները պետք է բոլոր առկա հնարավորությունները լայնորեն օգտագործեն գյուղատնտեսական մթերքների արտադրության և սննդամթերքների աճն ապահովելու համար։

Մի խոսքով, մենք պետք է մեր կարելին անենք, որպեսզի առավելագույն չափով ավելանա պարենային մթերքների արտադրությունը։ Այստեղ պետք է գործի նկատմամբ ցուցաբերել ստեղծարար մոտեցում։ Անհրաժեշտ է յուրա-

քանչյուր շրջանում և յուրաքանչյուր տնտեսությունում գտնել սննդամթերքների արտադրությունն ավելացնելու հարցերի լուծման առավել ռացիոնալ և լավագույն ուղիներ, անպայման հաշվի առնելով տեղական պայմանները, գիտության, պրակտիկ փորձի պահանջները։

Մի բան պարզ է. հանրապետությունում ոչ ոք չպետք է մի կողմ քաշվի այդ կենսականորեն կարևոր պրոբլեմի լուծումից։

Ընկերնե՛ր։ Սննդամթերքի արտադրության ավելացմանը զուգընթաց մենք պետք է հասնենք հանրապետության բնակչության սննդի բաղադրակազմի բարելավմանը։

Ձեթի, անարատ կաթնամթերքի, ձկան ու ձկնամթերքի՝ բնակչության մեկ շնչին հասնող սպառումով մեր հանրապետությունը մյուս միութենական հանրապետությունների շարքում գրավում է վերջին տեղերից մեկը։ Այսպես, եթե երկրում բնակչության մեկ շնչի հաշվով ձկան ու ձկնամթերքի սպառումը հասնում է տարեկան 17,6 կիլոգրամի, ապա մեր հանրապետությունում այդ ցուցանիշը կազմում է ընդամենը 4,4 կիլոգրամ, իսկ ձեթինը՝ համապատասխանաբար 8,8 և 2,7 կիլոգրամ։

Գոյացել է կենդանական յուղի և պանրի սպառման բարձր նորմա, որը կաթի վերածած կազմում է կաթնամթերքի սպառման ֆոնդի ավելի քան 90 տոկոսը։ Եվ միայն մնացած մասը, այսինքն՝ ընդամենը 10 տոկոսն է ընկնում անարատ կաթնամթերքին, որի սպառումը կիսով չափ պակաս է հանձնարարվող նորմայից, իսկ դա միանգամայն անցանկալի հետևանքներ է ունենում, մանավանդ երեխաների համար։

Անշուշտ, այդ երևույթը որոշ չափով պայմանավորված է մեր հանրապետության բնակչության ավանդույթներով։ Բայց և այնպես, սննդի գոյություն ունեցող բաղադրակազմը չի կարելի ռացիոնալ համարել։ Մենք պետք է համապատասխան աշխատանք տանենք անարատ կաթնամթերքի, ձեթի, ձկան ու ձկնամթերքի և այլ սննդամթերքների սպառումը ավելացնելու ուղղությամբ, բազմազան դարձնենք և համակշռենք մեր մարդկանց սննդի ռացիոնը։

Ընկերնե՛ր։

Պարենային ծրագրի իրականացման միջոցառումների կոմպլեքսում վճռական նշանակություն ունի հանրապետության հողային և ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործումը։

Հարկ է նշել, որ վերջին տարիներս այդ կարևոր բնագավառում նշանակալի աշխատանք է կատարվել։ Հանրապետության կուսակցական ու սովետական մարմինների հատուկ ուշադրության առարկան են եղել հողային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, դրանց նկատմամբ հոգատար վերաբերմունքի, հողի բերրիության մշտական բարձրացման հարցերը։ Եվ ձեռք բերված արդյունքները հուսադրող են։ Հաղթահարվում է վարելահողերի կրճատման տենդենցը։ Ավելին, 1975—81 թվականներին վարելահողերի տարածությունները ավելացել են։ Ոռոգելի հողատարածություններն ընդարձակվել են 23,9 հազար հեկտարով։

Դրա հետ մեկտեղ հանրապետության հողօգտագործման բնագավառում կան շատ թերություններ և չլուծված պրոբլեմներ։ Առկա են վարելահողերի, հատկապես ոռոգելի հողերի ոչ լրիվ և ոչ ռացիոնալ օգտագործման փաստեր։ Դեռևս անբավարար են ոռոգելի հողերի յուրացման և շահագործման, աղուտների աղազերծման, Արարատյան հարթավայրի գերխոնավ հողերի մելիորատիվ վիճակի բարելավման աշխատանքների տեմպերը։ Խրոնիկաբար չեն կատարվում հողերի վերակուլտիվացման և հակաէրոզիական ու հողապաշտպանական միջոցառումների պլանները։ Կուլտուր-տեխնիկական աշխատանքները խիստ ետ են մնում ջրատնտեսական շինարարության տեմպերից, ցածր է կատարվող աշխատանքների որակը։

Պարենային ծրագրով նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակում հանրապետությունում վարելահողերի տարածությունն ավելացնել 18 հազար հեկտարով և շրջանառության մեջ դնել 30 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր, իսկ տասներկուերորդ հնգամյակում՝ համապատասխանաբար 15 և 30 հազար հեկտար։ Հիշյալ պրոբլեմի լուծումը, ըստ համեստ հաշվարկների,



հնարավորություն կընձեռի ապահովելու գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալի 25—30 տոկոս աճ։ Սա բուսաբուծական և անասնապահական մթերքների ավելացման մեր գլխավոր ռեզերվն է։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է ապահովի այդ նպատակին հատկացված կապիտալ ներդրումների ու նյութատեխնիկական միջոցների բարձրարդյունավետ օգտագործումը, մշակի հանրապետության հողերի յուրացման տեմպերն արագացնելու միջոցառումներ, հատկապես ուշադրություն դարձնի Ախուրյանի ջրամբարին ենթակա հողերի վրա կարճ ժամանակամիջոցում նոր սովխոզների կազմակերպմանը։

Գյուղատնտեսության և հանրապետության էկոնոմիկայի մյուս ճյուղերի հետագա զարգացումն աներևակայելի է առանց ջրատնտեսական լայն մասշտաբի շինարարության և առանց ջրային ռեսուրսների արդյունավետ օգտագործման։

Այս կարևոր բնագավառում ևս քիչ բան չի արվել։ Վերջին վեց տարում գործարկվել են Աղստևի, Ջողազի, Ախուրյանի, Թավուշի, Բաշքենդի, Հալավարի, Կեչուտի և Տոլորսի ջրամբարները, որոնցում կուտակվում է ընդհանուր առմամբ 778 միլիոն խորանարդ մետր ջուր։ Համեմատության համար ասենք, որ մինչև 1975 թվականը կառուցված 55 ջրամբարներում կարգավորվող գետային հոսքի ծավալը կազմում էր ընդամենը 284 միլիոն խորանարդ մետր։ Ջրամբարների շինարարությունը շարունակվում է։ Աշխատանքներ են տարվում Սևաբերդի, Հախումի, Դավիթբեկի, Հերհերի, Սպանդարյանի ջրամբարների և Որոտան գետի հոսքը Սևանա լիճ փոխադրող ջրատեխնիկական կառուցվածքների կոմպլեքսի շինարարությունում։ Տասնմեկերորդ հնգամյակում կսկսվի Հրազդանի, Կապսի, Գետիկի, Հոկտեմբերյանի և Վեդու ջրամբարների շինարարությունը, իսկ տասներկուերորդ հնգամյակում՝ Մյասնիկյանի, Արմանիսի, Արշալույսի, Գառնու, Ցիլետովոյի և այլ ջրամբարների շինարարությունը։

Այս հիրավի վիթխարի և բարդ ծրագրի իրականացումը պահանջում է, որ Հայգլխջրշինը, մելիորացիայի և ջրային տնտեսության, գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունները, անտառտնտպետկոմը, համապատասխան նախագծային ու գիտահետազոտական ինստիտուտները, հիդրոհատուկշինը, Արփա—Սևանշինը, հանրապետության մյուս շինարարական ու մոնտաժային կազմակերպությունները արմատապես բարելավեն ջրամբարների նախագծային և շինարարական, ինչպես նաև դրանց շահագործման աշխատանքները։

Մեր հատուկ հոգսը պետք է լինի ոռոգման ջրի ռացիոնալ օգտագործումը։ Այստեղ կան շատ թերություններ ու վրիպումներ։ Ջրամբարներում առկա են ջրի ֆիլտրացիոն մեծ կորուստներ, հին ջրամբարների և ոռոգման սիստեմների մի մասը գտնվում է տեխնիկապես վատ վիճակում, թույլ են արմատավորվում ոռոգման առաջավոր եղանակները և ջրման տեխնիկան։ Այդ թերություններն անհամատեղելի են մեր մեծ պլանների հետ։

Մեկ անգամ չէ, որ ասել ենք ու պիտի միշտ կրկնենք, քանի դեռ չենք հասել նպատակին. մեր հանրապետության պայմաններում հողի յուրաքանչյուր հեկտարը, ջրի յուրաքանչյուր խորանարդ մետրը պետք է օգտագործվեն մաքսիմալ արդյունավետությամբ, առավել փոխհատուցմամբ։ Դրանցից մենք պետք է առավելագույն բերք ու բարիք ստանանք։ Սա պետք է լինի գյուղատնտեսության ասպարեզում մեր ամբողջ գործունեության հիմքերի հիմքը։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության աճի արագացմանը նպատակամղված միջոցների սիստեմում մեծ դեր է պատկանում գյուղատնտեսական արտադրության մեքենայացմանն ու քիմիացմանը։

Վերջին տարիներս հանրապետությունում քիչ աշխատանք չի կատարվել կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների տեխնիկական զինվածությունը բարձրացնելու ասպարեզում։ Զգալիորեն բարելավվել է մեքենատրակտորային համակազմի, սարքավորումների, հանքային պարարտանյութերի և բույսերի պաշտպանության միջոցների օգտագործումը, բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Նախատեսվում է զգալիորեն ավելաց-

նել աշխատանքի ֆոնդազինվածությունն ու էներգազինվածությունը հանրապետության գյուղատնտեսության մեջ, է՛լ ավելի ընդլայնել քիմիացման միջոցների կիրառման շրջանակը։

Մեքենաների ու սարքավորումների համակազմի ավելացման և դրանց շահագործման բարդացման կապակցությամբ աճում են պահանջները ողջ գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը բարելավելու նկատմամբ։

Սակայն այսօր մենք մեկ անգամ ևս արձանագրում ենք, որ շատ տնտեսություններում դեռևս ցածր է արտադրության մեքենայացման մակարդակը, նվազ արդյունավետությամբ են օգտագործվում հանքային պարարտանյութերը։ Ցածր է մեքենաների հերթափոխային և օրական արտադրողականությունը, դանդաղ են ներդրվում աշխատանքների կազմակերպման, մեքենատրակտորային համակազմի սարքավորումների նորոգման, սպասարկման ու պահպանման առաջավոր մեթոդները, տեղի ունի մեխանիզատորների կադրերի հոսունություն։ Լինում են պարարտանյութերի զգալի կորուստներ և նույնիսկ փչացում։

Հանրապետությունում պարարտանյութերի օգտագործման տեխնոլոգիայի խախտումների, այդ գործի վատ կազմակերպման հետևանքով պարարտանյութերի կիրառումից ստացված հավելումները նորմատիվայինից ցածր են։ Այսպես, հացահատիկային կուլտուրաների ոլորտում պարարտանյութերի մեկ տոննայի դիմաց բերքի 5,1 տոննա հավելման նորմատիվի փոխարեն տասներորդ հնգամյակում մեզ մոտ տարեկան միջին հաշվով ստացվել է հացահատիկային կուլտուրաների 3,6 տոննա հավելում կամ նորմատիվի 70 տոկոսը։ Շաքարի ճակնդեղի համար, համապատասխանաբար՝ 32 տոննայի փոխարեն 19 տոննա կամ 59 տոկոս, կարտոֆիլի՝ 18 տոննայի փոխարեն 9 տոննա կամ 50 տոկոս, բանջարեղենի և բոստանային կուլտուրաների՝ 34 տոննայի փոխարեն 21 տոննա կամ 62 տոկոս։

Պետպլանը, գյուղատնտեսության, պտուղբանջարեղենի մինիստրությունները, գյուղտեխպետկոմը, անտառտնտպետկոմը, «Հայգյուղքիմիա» հանրապետական արտադրագիտական միավորումը, մյուս այն մինիստրություններն ու գերատեսչությունները, որոնց տնօրինության տակ կան գյուղատնտեսական ձեռնարկություններ ու կազմակերպություններ, կոլտնտեսությունների, պետական տնտեսությունների և միջտնտեսային ձեռնարկությունների ղեկավարները պետք է մշակեն և իրականացնեն այնպիսի միջոցառումներ, որոնք նախատեսեն արտադրապրոցեսների մեքենայացման աստիճանի, գյուղատնտեսական մեքենաների ու սարքավորումների օգտագործման արդյունավետության զգալի բարձրացում, մեխանիզատորների աշխատանքի կազմակերպման ձևերի ու մեթոդների կատարելագործում, գյուղատնտեսական տեխնիկայի պահպանման, շահագործման և դուրսգրման սահմանված կարգի խստիվ կիրառման նկատմամբ վերահսկողության ուժեղացում, հանքային և օրգանական պարարտանյութերի և բույսերի պաշտպանության միջոցների կիրառման արդյունավետության բարձրացում։

Ընկերնե՛ր։ Գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման և հանրապետության ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման մեծ խնդիրների իրականացումն ապահովվում է կապիտալ ներդրումների հարաճուն ծավալներով։

Սակայն կապիտալ ներդրումների լրիվ ու արդյունավետ օգտագործման և գյուղական շինարարության կազմակերպման գործում մենք դեռևս խոշոր թերություններ ունենք։ Տարեցտարի կապիտալ ներդրումների իրացումը թերակատարվում է, առկա են դրանց փոշեցրման փաստեր, վիժեցվում են մեծ թվով կարևորագույն օբյեկտների գործարկման ժամկետները։ Այս ամենը զգալի վնաս է հասցնում արդյունաբերական կոմպլեքսի զարգացմանը։

Մենք պետք է, ինչպես պահանջեց ՍՄԿԿ Կենտկոմի՝ այս տարվա մայիսյան պլենումը, ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառույցները համարենք հանրապետության կարևորագույն հարվածային կառույցներ, բարձրացնենք կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների, շինարարական կազմակերպությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների, վերամշակող ձեռնարկությունների ղեկավարների պատասխանատվությունը կապիտալ ներդրումներն արդյունավետ օգտագործելու համար, գյուղատնտեսության ու պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունների, սննդի, պահածոյի, մսի ու կաթի արդյունաբերության և ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ճյուղերի օբյեկտներում կարողությունների ժամանակին գործարկելու և յուրացնելու համար։ Հարկավոր է հատկացվող կապիտալ ներդրումները առաջին հերթին գործադրել այն կարողությունների զարգացման համար, որոնք հնարավորություն ընձեռեն ամենակարճ ժամկետներում ավելացնելու պարենամթերքի արտադրությունը, նպատակամղելու գործող ձեռնարկությունների ու արտադրությունների տեխնիկական վերազինմանը, ընդլայնմանն ու վերակառուցմանը, կառուցվող օբյեկտների գործարկման արագացմանը։

Պարենային ծրագրի իրացման գործում պետք է մեծ ավանդ ներդնի գիտությունը։

Մեր գիտնականները վերջին տարիներս բարձրացրել են գիտական հետազոտությունների արդյունավետությունը, ամրապնդվել է գիտության կապը գյուղատնտեսական արտադրության հետ։

Հանրապետության պետպլանը, գիտությունների ակադեմիան, ագրոարդյունաբերական կոմպլեքսի մինիստրություններն ու գերատեսչությունները և նրանց գիտահետազոտական ստորաբաժանումները պետք է 1982—1990 թվականներին միջոցներ ձեռնարկեն գիտական հետազոտությունների հետագա զարգացման և արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորումն արագացնելու նպատակով։ Անհրաժեշտ է ուժեղացնել բուսաբուծության մեջ կիրառվող ինդուստրիալ տեխնոլոգիաների պահանջներին համապատասխանող գյուղատնտեսական կուլտուրաների նոր սորտերի ու հիբրիդների ստեղծման սելեկցիոն աշխատանքը։ Պետք է ստեղծել և արմատավորել միջավայրի անբարենպաստ գործոնների նկատմամբ կայուն, առավելագույն բերքատվության սորտեր, որոնք տան բարձրորակ մթերք։ Արագացնել կարտոֆիլի, բանջարեղենի, բոստանային, պտղատու կուլտուրաների և խաղողի այնպիսի բարձրբերքատու սորտերի ու հիբրիդների արմատավորումը, որոնք օժտված լինեն սննդային և տեխնոլոգիական բարձր հատկություններով։ Միջոցներ ձեռնարկել կատարելագործելու անասունների տոհմային հատկանիշները և ստեղծելու նոր բարձրմթերատու ցեղատեսակներ, գծեր, հիբրիդներ, որոնք հարմարեցված լինեն անասնապահության ճյուղերում կիրառվող արդյունաբերական տեխնոլոգիաներին։

Պետք է ուժեղացնել հողային ու ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու աղտոտումից և ուժասպառումից այդ ռեսուրսների պահպանման հետազոտությունները։ Ապահովել արհեստական սառեցման միջոցով և կարգավորվող գազային միջավայրում գյուղատնտեսական մթերքների պահպանության նոր տեխնոլոգիաների մշակումն ու արմատավորումը։

Անհրաժեշտ է ստեղծել գյուղատնտեսական մթերքների վերամշակման բարձրարդյունավետ, անթափոն տեխնոլոգիաներ, որոնք ապահովեն սննդամթերքների բարձր որակը, համային հատկությունները և տևական պահպանումը, հնարավորություն ստեղծեն արտադրելու կոմպլեքսային սննդաբեր հատկություններ ունեցող մթերքներ։ Հրատապ են դառնում ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման ու պլանավորման կատարելագործմանը նպատակամետ հետազոտությունները։

Ընկերնե՛ր։ Կուսակցական, սովետական, տնտեսական և արհմիութենական մարմինների կարևորագույն խնդիրն է հետևողական միջոցառումներ իրականացնել գյուղի սոցիալական զարգացման, գյուղի բնակիչների բարեկեցության, կուլտուրայի, բժշկական և կենցաղային սպասարկման հետագա բարձրացման ուղղությամբ։ Գաղտնիք չէ, որ ագրոարդյունաբերական կոմպլեքսի հաջող գործադրումը հնարավոր է համապատասխան արտադրական ու սոցիալական ինֆրակառուցվածքի առկայության պայմաններում։ Մենք պետք է կոլտնտեսություններում, սովխոզներում և մյուս գյուղատնտեսական ձեռնարկություններում ավելի ակտիվորեն իրականացնենք բնակելի տների, մանկական նախադպրոցական հիմնարկների,

ակումբների, գրադարանների, առևտրի, հասարակական սննդի և բնակչության կենցաղային սպասարկման ձեռնարկությունների, սոցիալական, կուլտուր-կենցաղային այլ օբյեկտների, ինչպես նաև ճանապարհների շինարարությունը:

Պետք է ընդլայնել կոլտնտեսություններում և սովխոզներում բնակելի տների անհատական շինարարությունը, տներ կառուցողներին ըստ ամենայնի օգնություն ցույց տալ ֆինանսական և նյութական ռեսուրսներ հատկացնելու գործում, այդ նպատակների համար անհրաժեշտ շինանյութեր հատկացնել:

Գյուղի սոցիալական զարգացման ծրագրի իրականացման համար պետպլանը, ագրոարդյունաբերական կոմպլեքսի մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է տարեկան և հնգամյա պլանները մշակելիս լրացուցիչ միջոցներ գտնեն տնտեսություններում ոչ արտադրական շինարարության համար, կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի վերաբաշխման հաշվին՝ հօգուտ գյուղի:

Ընկերնե՛ր: Ինչպես նշվեց, պարենային ծրագրի հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննության առավ և ընդունեց ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման բարելավմանը և տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը նպատակամղված միջոցառումների սիստեմ:

Առաջին անգամ ագրոարդյունաբերական կոմպլեքսը առանձնացվում է որպես պլանավորման և կառավարման ինքնուրույն օբյեկտ: Դրանով իսկ հնարավորություն է ստեղծվում ավելի լավ, ավելի արդյունավետ զուգակցելու տերիտորիալ, ճյուղային և ծրագրանպատակային պլանավորումը, որի հիմքում դրված է վերջնական արդյունքը՝ պարենի անխափան մատակարարումը երկրին: Այդ նպատակին է ծառայելու ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի կառավարման միասնական սիստեմը: Հանրապետության շրջաններում ստեղծվում են ագրոարդյունաբերական միավորումներ, իսկ հանրապետությունում՝ ագրոարդյունաբերական հանձնաժողով:

Հատուկ նշանակություն է տրվում շրջանային օղակին:

Նկատի ունենալով շրջաններում լուծվող խնդիրների բարդությունը և բազմազանությունը, կուսակցության գյուղական շրջկոմներում ստեղծվում են գյուղատնտեսական բաժիններ:

Մեծ ուշադրություն է նվիրված գյուղի էկոնոմիկական վիճակի բարելավմանը, առողջացմանը, կոլտնտեսություններում և սովխոզներում տնտհաշվարկի ամրապնդմանը:

1983 թվականի հունվարի 1-ից բարձրացվում են խոշոր եղջերավոր անասունների, խոզերի, ոչխարների, կաթի, հացահատիկի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, բանջարեղենի և մյուս մթերքների գնման գները:

Աճեցված մթերքներն ավելի լրիվ օգտագործելու, դրանք ավելի լավ պահպանելու ու վերամշակելու համար նախատեսված է տասներկուերորդ հնգամյակում ավարտել անցումը անմիջականորեն կոլտնտեսություններում և սովխոզներում անասունների, թռչունների, կաթի, կարտոֆիլի, բանջարեղենի, պտուղների և հատապտուղների ընդունմանը: Այդ մթերքները կփոխադրվեն մթերող կազմակերպությունների տրանսպորտով:

Տեղերում այդ բոլոր որոշումների իրականացման համար կուսակցության շրջանային կոմիտեները, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմները, մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է քրտնաջան և հետևողական քաղաքական ու կազմակերպչական աշխատանք տանեն:

Ընկերնե՛ր:

Պարենային ծրագրի իրականացումը պահանջում է հետևողականորեն բարելավել կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործը:

Վստահություն ղեկավար կադրերի նկատմամբ, պահանջկոտ ու շահագրգռված մոտեցում նրանց գործունեությանը, նախաձեռնության խրախուսում և դրա հետ մեկտեղ հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության բարձրացում՝ այսպիսին է կադրային հարցում կուսակցության



քաղաքականության էությունը: Մեր կադրերը բավական աճել են, նրանք ի վիճակի են լուծելու մեծ և բարդ խնդիրներ:

Սակայն դեռ կան ոչ քիչ թվով ղեկավար կադրեր, որոնք դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը, բավարար չափով չեն մոբիլիզացնում արտադրության ներքին ռեզերվներն ու հնարավորությունները, տնտեսությունը վարում են հին ձևով, իրենց դարն ապրած մեթոդներով, բավարարվում են ձեռք բերածով:

Կուսակցության առանձին շրջկոմներ միշտ չէ, որ խորապես ուսումնասիրում են կադրերի քաղաքական, կազմակերպչական և գործնական հատկությունները, որի հետևանքով երբեմն ղեկավար աշխատանքի են առաջ քաշվում անարժան, նախաձեռնությունից զուրկ, նախկինում իրենց չարդարացրած մարդիկ, մի բան, որը հանգեցնում է աշխատավորական կոլեկտիվների աշխատանքի վատացման և, որպես հետևանք, ղեկավար աշխատողների հաճախակի փոփոխության:

Լուրջ թերություններ կան ագրոարդյունաբերական կոմպլեքսի կադրերի պատրաստման և վերապատրաստման գործում:

Կոլտնտեսությունների և սովխոզների երաշխավորությամբ դեռ քիչ երիտասարդներ են ուղարկվում գյուղատնտեսական ուսումնական հաստատություններ: Գյուղատնտեսական բուհերին և սովխոզ-տեխնիկումներին կից ստեղծված գյուղատնտեսական կադրերի որակավորման բարձրացման ֆակուլտետները և դպրոցները, գյուղատնտեսության կառավարման դպրոցները դեռ բավարար արդյունավետությամբ չեն գործում: Շրջանային կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները այդ ուսումնական հաստատությունները չեն ապահովում ունկնդիրների համապատասխան կոնտինգենտով:

Գյուղատնտեսության մի շարք ճյուղերում զգացվում է մասսայական պրոֆեսիաների կադրերի՝ մեխանիզատորների, մեքենայական կթի վարպետների, անասնապահական համալիրների ու կերի արտադրամասերի օպերատորների և այլ մասնագետների պակաս:

Գյուղատնտեսության մինիստրությունը, շրջանային կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական, գյուղատնտեսական մարմինները պարտավոր են կոմպլեքսային միջոցառումներ իրականացնել բոլոր օղակների աշխատողների մասնագիտական որակավորումը բարձրացնելու, տեղերում երիտասարդ մասնագետներին ամրակայելու, նրանց համար աշխատանքի ու կենցաղի անհրաժեշտ պայմաններ ստեղծելու ուղղությամբ: Հատուկ ուշադրություն պետք է նվիրվի արտադրության միջին օղակը մասնագետ կադրերով ամրապնդելու հարցերին:

Ընկերնե՛ր:

Պարենային ծրագրի իրականացումը պահանջում է է՛լ ավելի բարձրացնել ագրոարդյունաբերական կոմպլեքսի կուսակցական ղեկավարման մակարդակը, կատարելագործել մասսաների շրջանում տարվող կազմակերպչական և քաղաքական աշխատանքի մեթոդները:

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի նյութերը և որոշումները պետք է գործողության կոնկրետ ծրագիր լինեն կուսակցության շրջկոմների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմունիստի համար՝ ագրոարդյունաբերական կոմպլեքսի հետագա զարգացման, ժողովրդի բարեկեցության աճի արագացման համար մղվող պայքարում: Մենք բոլորս պետք է ըմբռնենք, որ պարենային ծրագիրը միայն արմատական շրջադարձ չի նշանավորում գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի վերելքի գործում: Այդ ծրագիրը իր բնույթով, մասշտաբայնությամբ կոչված է ապահովելու ամբողջ ժողովրդական տնտեսության առաջընթացը:

Պարենային ծրագրի հաջող կատարումը շատ բանով պայմանավորված է աշխատավորական կոլեկտիվներում կուսակցական կազմակերպությունների քաղաքական, կազմակերպչական և գաղափարադաստիարակչական աշխատանքի մակարդակի բարձրացմամբ:

Ուստի կուսակցական կոմիտեների աշխատանքի ծանրության կենտրոնը պետք է գտնվի սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատավորական

կոլեկտիվներում: Այնտեղ, որտեղ անմիջականորեն պետք է նյութականացվեն ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները, այնտեղ, որտեղ պետք է կոնկրետ կերպով իրագործվի պարենային ծրագիրը, այնտեղ, որտեղ իրողություն է դառնում կուսակցության քաղաքականությունը:

Կուսակցությունը պարենային պրոբլեմի լուծումը համարում է համապետական, համաժողովրդական գործ: Միայն հանրապետության բոլոր կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, բոլոր աշխատավորների ջանքերով կարելի է իրականացնել այն խոշորամասշտաբ խնդիրները, որ նախատեսված են պարենային ծրագրում: Այդ գործում մեծ դեր է պատկանում մեր փառապանծ բանվոր դասակարգին: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի բոլոր կոլեկտիվներին կոչ է անում ակտիվացնել գյուղին շեֆական օգնություն ցույց տալու աշխատանքը:

Կուսակցության շրջկոմները պարտավոր են ուժեղացնել սովետների և նրանց տեղական մարմինների ղեկավարումը, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել կազմակերպորեն ամրապնդելու նորաստեղծ ագրոարդյունաբերական միավորումները այն հաշվով, որ նրանք իրենց բոլոր իրավունքներն ու լիազորությունները լրիվ նպատակամղեն ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի առաջադրած խնդիրների լուծմանը:

Կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է ավելի բարձրացնեն սոցիալիստական մրցության նշանակությունն ու դերը, հասնեն այն բանին, որ սոցիալիստական պարտավորությունները լինեն կոլեկտիվների և արտադրության առաջավորների նախաձեռնության ու փորձի իսկական արտահայտությունը, բոլոր աշխատավորներին նպատակամղեն մեր կուսակցության ստրատեգիական գծի իրականացմանը:

Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների գլխավոր խնդիրն է հանրապետության բոլոր աշխատավորներին հասցնել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումները, խորապես ու բազմակողմանիորեն բացահայտել կուսակցական որոշումների իմաստը, ցույց տալ հայրենանվեր աշխատանքի նշանակությունը ագրոարդյունաբերական կոմպլեքսի հետագա վերելքի գործում, ակտիվորեն պաշտպանել արժեքավոր նախաձեռնությունները, տարածել առաջավոր փորձը, սուր կերպով քննադատել թերությունները և նպաստել դրանց վերացմանը:

Հանրապետության գրականության և արվեստի գործիչները պետք է ստեղծեն այնպիսի գեղարվեստական գործեր, որոնք աշխատավորներին նպատակամղեն անձնվեր և համառ աշխատանքի՝ հանուն կուսակցության կանխագծումների կատարման:

Ընկերնե՛ր: Պլենումում տված իր զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ պարենային ծրագիրը առաջադրում է ժամկետների առումով տարբեր խնդիրներ՝ թե՛ երկարաժամկետ, թե՛ միջին ժամկետի և թե հրատապ, անհետաձգելի խնդիրներ: Անհետաձգելի խնդիրները պետք է դառնան մեր այսօրվա հոգածության գլխավոր առարկան: Մենք պետք է ամեն ինչ անենք, որ պարենային ծրագիրն իր առաջին պտուղները տա արդեն ընթացիկ տարում:

Հատուկ պատասխանատվություն է ընկնում ագրոարդյունաբերական կոմպլեքսի մեջ մտնող մինիստրությունների և գերատեսչությունների վրա: Առաջին հերթին դա վերաբերում է գյուղատնտեսության մինիստրությանը և նրա տեղական մարմիններին: Հարկավոր է, որ ընթացիկ գյուղատնտեսական տարվա յուրաքանչյուր փուլ անցկացվի կազմակերպված, աշխատանքի բարձր որակով: Այժմ մեծ նշանակություն ունեն անասնապահության համար կերի կուտակումը, արոտային ժամանակաշրջանում մսի, կաթի արտադրության արագ ավելացումը: Շատ կարևոր է ապահովել ցանքսերի խնամքը, լավ նախապատրաստվել և կազմակերպված անցկացնել հացահատիկային կուլտուրաների, պտուղբանջարեղենի և մյուս բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքահավաքը: Եվ, ամենագլխավորը՝ հասնել այն բանին, որ աճեցված



ամբողջ բերքը ժամանակին և անկորուստ ընդունվի կոլտնտեսություններից և պետական տնտեսություններից, հուսալիորեն պահպանվի, վերամշակվի և առաքվի սպառողին: Մթերքների ընդունման, առաքման ու վերամշակման հետ առնչվող մինիստրություններն ու գերատեսչությունները, առաջին հերթին պտուղբանջարեղենի տնտեսության, սննդարդյունաբերության, մթերումների և ավտոտրանսպորտի մինիստրությունները, Հայկոոպը պետք է լիակատար պատասխանատվություն կրեն դրա համար:

Գյուղատնտեսության մեջ և վերամշակող արդյունաբերության ճյուղերում աշխատանքի հաջողությունը մեծապես պայմանավորված է նրանով, թե ինչպես կկատարվեն տեխնիկայի, սարքավորումների, պահեստամասերի, հանքային պարարտանյութերի ու հերբիցիդների, համակցված կերի, վառելիքի և մյուս նյութական ռեսուրսների մատակարարումները: Դրանք ժամանակին չմատակարարելը, առավել ևս ձախողումներն այստեղ անթույլատրելի են:

Գյուղտեխպետկոմը, պետմատը, մթերումների մինիստրությունը, նավթմատպետկոմը, հանրապետության գյուղատնտեսության մինիստրությունը պետք է արմատապես բարելավեն ագրոարդյունաբերական կոմպլեքսի մատակարարումը: Անհրաժեշտ է արագացնել գյուղում անասնապահական օբյեկտների, գյուղտնտքիմիայի, գյուղտեխնիկայի, վերամշակող արդյունաբերության օբյեկտների շինարարության տեմպերը:

1982 թվականի բնագծերը սահմանված են մեր սոցիալիստական պարտավորություններով:

Յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ, յուրաքանչյուր սկզբնական կուսակցական կազմակերպություն պետք է իր ջանքերը նպատակամղի մեր միասնական բազմազգ սովետական պետության 60-ամյակի տարվա՝ 1982 թվականի պլանային առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների լրիվ կատարմանը:

Մեզանից՝ Կենտկոմի պլենումի մասնակիցներից յուրաքանչյուրը, յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր աշխատավոր պետք է համակվի այն բանի գիտակցությամբ, որ մեր բոլոր հաջողությունները պայմանավորված են կազմակերպված, որակյալ, բարձրարտադրողական աշխատանքով: Աշխատել և աշխատել, սովորել, յուրացնել գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումները, տիրապետել նոր առաջավոր փորձին և բարեխիղճ, համառ աշխատել— ահա մեր զարգացման գրավականը, մեր առջև դրված նպատակներին հասնելու երաշխիքը:

Թույլ տվեք, ընկերնե՛ր, ՍՄԿԿ Կենտկոմին հավաստիացնել, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունը, բոլոր աշխատավորները անհրաժեշտ ամեն ինչ կանեն ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում ընդունված պարենային ծրագրի իրականացման համար, սոցիալիստական լայն մրցություն կծավալեն 1982 թվականի՝ նախատեսված բնագծերի նվաճման համար, բոլոր ջանքերը կնպատակամղեն ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների հաջող իրականացմանը:

---

## ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

# ՀԱՍՏՈՑԱՇԻՆԱՐԱՐՆԵՐԻ ՊԱՏՎԻ ԳՈՐԾԸ


**Մ. Յ. ՄԿՐՏՉՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության բաժնի
վարիչի տեղակալ


ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՆՇԵՑ, որ արդի փուլում կուսակցության տնտեսական քաղաքականության արմատական հարցերից է հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումը: Այն իրականացվում է գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության մեջ նոր մշակումների արմատավորման հիման վրա: Այդ գործում վճռական դեր է խաղում մեքենաշինությունը: Դրա հարաճուն զարգացման, տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշներ ունեցող մեքենաների, սարքավորումների, ագրեգատների ու սարքերի թողարկման ընդլայնման շնորհիվ լուծվում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական զինման խոշոր ու հրատապ խնդիրները: «Գիտատեխնիկական առաջընթացի հիմքերի հիմքը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— գիտության զարգացումն է: Բայց նորի առջև դռները լայնորեն բացել կարող է ամենից առաջ մեքենաշինությունը: Այն առաջավորը, ինչ ստեղծում է գիտական և ինժեներական միտքը, մեքենաշինությունը կոչված է անհապաղ յուրացնել, մարմնավորել բարձր արդյունավետ, հուսալի մեքենաների, սարքերի, տեխնոլոգիական գծերի մեջ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութեր, էջ 71):

Մեքենաշինական արդյունաբերության մեջ տեսակարար մեծ կշիռ ունի հաստոցաշինական ու գործիքաշինական ենթաճյուղը, որն անցած՝ տասնևորդ հնգամյակում զգալի վերելք է ապրել: Ծնունդ են առել բարձրարտադրողական կատարելագործված բազմատեսակ մետաղամշակման և մետաղահատ հաստոցներ ու գործիքներ, ընդլայնվել է թվածրագրային կառավարմամբ հաստոցների արտադրությունը, իրագործվել են գիտատեխնիկական առաջընթացի արագացման զանազան միջոցառումներ: Այդ դրական պրոցեսը նկատելի է նաև Սովետական Հայաստանի հաստոցաշինական ու գործիքաշինական արդյունաբերության մեջ: Նախընթաց տարիներին մեքենաշինության այդ ենթաճյուղի՝ մեր հանրապետությունում գործող ձեռնարկություններում յուրացվել է 80 նոր մակնիշի հաստոցների ու գործիքների արտադրությունը, ներդրվել են 488 անուն նոր սարքավորումներ, իրականացվել առաջավոր տեխնոլոգիայի 416, արտադրապրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման 420 միջոցառումներ, անցկացվել 10 հոսքային և մեքենայացված գիծ: Երկիրն ստացել է բազմաթիվ նոր տեսակի ու մակնիշի մետաղակտրիչ ու մետաղամշակման, դարբնոցամամլիչային, մասնագիտացված, բալանսավորող ու էլեկտրաէրոզիոն և այլ տիպի հաստոցներ: Ընդ որում, որոշ արտադրատեսակների միակ թողարկողը Միությունում հայաստանյան ձեռնարկություններն են: Ամենուրեք մեծ է դրանց պահանջարկը:



Հաստոցների զգալի մասը դրավել է նաև արտասահմանյան պատվիրատուների ուշադրությունը: Կիրովականի ճշգրիտ, Լենինականի հղկող հաստոցների, Երևանի Ձերժինսկու անվան, Հոկտեմբերյանի և Չարենցավանի հաստոցաշինական գործարանների թողարկած հաստոցների մի քանի տեսակներ ներկայացվել են միջազգային տոնավաճառներին ու ցուցահանդեսներին, արժանացել արտասահմանյան մասնագետների բարձր գնահատականին: Տասներորդ հնգամյակում և ընթացիկ հնգամյակի անցած մեկուկես տարում յուրացված նոր զամմայի հաստոցներն աչքի են ընկնում իրենց կատարելագործված կառուցվածքով, հուսալիությամբ ու երկարակեցությամբ:

Հաստոցաշինության այսօրվա հաջողություններում արժանի ավանդ են ներդրել այդ ճյուղի ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունները: Նրանց մեծ մասի գործունեությանը բնորոշ է սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման ասպարեզում ցուցաբերվող գիտական մոտեցումը: Կուսկազմակերպությունները հանդես են գալիս որպես բազմաթիվ մասսայական նախաձեռնությունների սկզբնավորողներ, ապահովում են կոմունիստների ավանգարդային դերն արտադրության մեջ և հասարակական-քաղաքական կյանքում, արտադրական կոլեկտիվների ջանքերը նպատակամղում պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարմանը:

Հանրապետության հաստոցաշինության առաջնեկը՝ Ձերժինսկու անվան գործարանը, 75 տարվա պատմություն ունի: Այն նախահեղափոխական փոքր արհեստանոցից վերածվել է խոշոր ձեռնարկության, դարձել հաստոցաշինության համար պրոֆեսիոնալ կադրերի պատրաստման դարբնոց: Գործարանի կոլեկտիվը, երկրի առաջատար գիտահետազոտական ինստիտուտների հետ սերտ համագործակցությամբ, արդյունավետ աշխատանք է ծավալում ճյուղի տեխնիկական առաջընթացի և, ամբողջությամբ վերցրած, մեքենաշինության բարդ խնդիրների լուծման ասպարեզում:

Երևանի հաստոցաշինական արտադրամիավորումը, որի գլխավորող ձեռնարկությունը Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանն է, տասնևորդ հնգամյակի տարիներին տեխնիկատնտեսական հիմնական ցուցանիշներով կատարեց ու գերակատարեց պետական պլանները: Այստեղ, 1975 թ. համեմատությամբ, զգալիորեն ընդլայնվեց արտադրածավալը, բարելավվեց որակը. պետական որականիշ է շնորհվել ինը մակնիշի հաստոցների, որոնց տեսակարար կշիռը ապրանքային արտադրանքի ընդհանուր ծավալում կազմում է 36 տոկոս: Պետական պլանի հաջող կատարումն ապահովվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման, հաստոցների նոր տեսակների արտադրության, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, սոցիալիստական գործարար մրցության ծավալման շնորհիվ: Գործարանում կիրառվում են մրցության ու մրցույթների մեկ տասնյակից ավելի ձևեր, պատշաճ կարևորություն է տրվում մրցության արդյունքների ամփոփմանը: Միջարտադրամասային, միջտեղամասային և միջբրիգադային մրցության արդյունքները, օրինակ, հանրագումարի են բերվում ամեն ամիս, իսկ բաժիններինը և ծառայություններինը՝ յուրաքանչյուր եռամսյակի վերջում: Ըստ տարեկան արդյունքների մրցության առաջավորներին շնորհվում են «Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվ» և «Կոմունիստական աշխատանքի հարվածային» կոչումներ: Եռամսյակային մրցության հաղթողներն արժանանում են «Ըստ մասնագիտության լավագույն բանվոր», «Լավագույն երիտասարդ բանվոր», «Գործարանի լավագույն մասնագետ» և այլ կոչումների: Մրցության պատշաճ կազմակերպումն ու ծավալումը նպաստում են կոլեկտիվի անդամների աշխատանքային և քաղաքական ակտիվության վերելքին, ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը:

Այստեղ պահպանվում են բանվոր դասակարգի լավագույն ավանդույթները: Եվ օրինաչափ է, որ կոլեկտիվը միշտ էլ աչքի է ընկնում արտադրական ու քաղաքական բարձր ակտիվությամբ, առաջավոր օղակներն ու առաջամարտիկները հանդես են գալիս հայրենասիրական ուշագրավ նախաձեռնություններով: 1980 թ. գործարանի կուսբյուրոն քննարկեց և խրախուսեց Լենինի շքանշանակիր Գևորգ Գրիգորյանի ղեկավարած կաղապարողների բրիգադի՝ «1981

թվականի առաջին եռամսյակի առաջադրանքը կատարել ՍՄԿԿ XXVI համագումարի բացման օրը՝ փետրվարի 23-ին» նախաձեռնությունը: ՀԿԿ Երևանի կազմակերպության Լենինյան շրջկոմի բյուրոն, հավանություն տալով նախաձեռնությանը, հանձնարարեց շրջանի սկզբնական կուսկազմակերպություններին՝ լայնորեն տարածել այն և մոբիլիզացնել աշխատավորական կոլեկտիվների ուժերը կուսակցության համագումարը արտադրական հասումներով դիմավորելու համար: Ի դեպ, Գ. Գրիգորյանի բրիգադը պատվով կատարեց իր խոստումը:

Սոցիալիստական մրցության ավանգարդում ընթանում են Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիրներ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Աշոտ Ղազարյանը, Երևանի քաղսովետի դեպուտատ Ռազմիկ Արղումանյանը, ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարի պատգամավոր, ՀԱՄԿԽ-ի անդամ, «Պատվո նշան»-ի շքանշանակիր Հովհաննես Օհանյանը և ուրիշներ:

Գործարանը 1981 թվականին երկու անգամ (I և III եռամսյակ) հաղթող է դուրս եկել մայրաքաղաքի, իսկ տարվա արդյունքներով՝ հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների մրցությունում և արժանացել համապատասխան փոխանցիկ կարմիր դրոշների ու դրամական մրցանակների:

ՍՄԿԿ XXVI համագումարն առանձնահատուկ շեշտեց, որ «էկոնոմիկայի ղեկավարման հարցերը ոչ թե պարզապես տնտեսական, այլ քաղաքական, կուսակցական հարցեր են»: Հիրավի, փորձը ցույց է տվել, որ հաջողության հասնում են այնտեղ, որտեղ խելամտորեն ու արդյունավետ են կիրառում կուսակցական ազդեցության եղանակները, գլխավոր ուշադրությունը սևեռում են մարդկանց հետ տարվող կենդանի, նպատակամղված աշխատանքի, նրանց ստեղծագործական նախաձեռնության զարգացման վրա: Դա հատկապես բնութագրական է Հրազդանի շրջանին, որտեղ կենտրոնացված են հանրապետության հաստոցաշինարարների հիմնական ուժերը: Չարենցավանի կենտրոնական ձուլարանի, հաստոցաշինական ու գործիքաշինական գործարանների սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես խորամուխ են լինում արտադրության հարցերի մեջ, լավ են կազմակերպում սոցիալիստական մրցությունը: Նրանք ամենօրյա հոգածություն են սահմանում թողարկվող արտադրանքի որակի բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, կառավարման կոմպլեքսային համակարգի ներդրման վրա: Այդ ձեռնարկությունների կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկվում են կոլեկտիվի համաչափ և արդյունավետ աշխատանքի ապահովմանը, արտադրական ծրագրերի կատարմանը, արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացմանը վերաբերող հրատապ հարցեր: Կուսկազմակերպությունները մրցության և կուսակցական ազդեցության բոլոր միջոցներն օգտագործում են կոլեկտիվի ստեղծագործական ոգին բարձր պահելու, արտադրության կազմակերպումը կատարելագործելու համար: Այդ ամենը նպաստել է գիտատեխնիկական առաջընթացի արագացման նպատակով մշակված միջոցառումների իրականացմանը, արտադրության արդյունավետության բարձրացմանը: Կենտրոնական ձուլարան գործարանը չուգունի և պլյումինի ձուլվածքներ է մատակարարում Երևանի ֆրեզերային հաստոցների, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ավտոպահեստամասերի, Հոկտեմբերյանի հաստոցաշինական, Կիրովականի ճշգրիտ հաստոցների. Չարենցավանի հաստոցաշինական և գործիքաշինական գործարաններին: Այստեղից էլ նրա կարևորությունը հանրապետությունում հաստոցաշինական արդյունաբերության զարգացման գործում: Ձեռնարկությունն անընդհատ վերընթաց քայլեր է անում, կատարելագործում արտադրությունը, արմատավորում տեխնոլոգիական առաջավոր եղանակներ: Այստեղ հաջողությամբ ներդրվել են գունավոր մետաղների ձուլման և գեղարվեստական ձուլվածքի արտադրության, ձուլվածքի անընդհատ թողարկման և սինթետիկ ձյութի հիման վրա սառը պնդեցման խառնուրդով ձուլաձողերի պատրաստման եղանակները: Միայն ձուլվածքը կոմպլեքսային-մեքենայացված արտադրության արմատավորման շնոր-



հիվ տնտեսական արդյունավետությունը կազմել է մոտ 110 հազար ռուբլի: Բուն արտադրության ոլորտում ընդգրկված կոմունիստները, գործող 25 կուսխմբերը և արտադրամասային կուսկազմակերպությունները շատ ջանքեր են գործադրում արտադրությունը կատարելագործելու և նորամուծություններն արմատավորելու համար: Այդպիսի պատրաստակամություն է նկատվում նաև Չարենցավանի հաստոցաշինական գործարանի կոլեկտիվում, որտեղ կազմակերպվել է բարձրակնթարթային շարժիչների և հորիզոնական-ներտաշ հաստոցների արտադրությունը: Հաստոցներն իրենց տեխնիկական բնութագրով համապատասխանում են արդի պահանջների մակարդակին: Ունիվերսալ հավաքման հարմարանքի ներդրմամբ գործարանն ստացել է 81 հազար 300 ռուբլու օգուտ:

Շրջանի կուսկազմակերպությունները մեծ նշանակություն են տալիս արտադրության կառավարման ավտոմատացված համակարգի ներդրմանն ու կատարելագործմանը: Ուշագրավ երևույթ է գործիքաշինական գործարանում ստեղծված հաշվողական կենտրոնը, որտեղ տեղադրվել են հաշվիչ նոր մեքենաներ և որն իրականացնում է դիսպետչերական հսկողություն, կատարում այլ ծառայություններ: Տասնմեկերորդ հնգամյակում ինֆորմացիոն-հաշվողական կենտրոնը կապահովի նաև Չարենցավանի հաստոցաշինական և կենտրոնական ձուլարան գործարանների պահանջը, կօգնի նրանց ավտոմատ կառավարման համակարգի ներդրման գործում: Հաշվողական կենտրոնը ծրագիր է մշակում թվածրագրային կառավարման հաստոցի համար: Փորձը ցույց է տվել, որ ծրագրով գործող հաստոցներով ստացված արտադրանքն առավել բարձրորակ է: Նախատեսվում է հաշվողական կենտրոնի միջոցով իրագործել նաև հաշվապահական հաշվումները և հաշվետվությունների կազմումը:

Կուսկազմակերպություններն իրենց ակտիվ միջամտությամբ խթանում են գյուտարարական ու ռացիոնալիզատորական շարժումը: Հանրապետության հաստոցաշինարարների բոլոր ռացիոնալիզատորական առաջարկություններն ու գյուտերը, տասներորդ հնգամյակում արտադրության մեջ դրանց ներդրումը միտել է արտադրության մեքենայացմանն ու ավտոմատացմանը, թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը: Երևանի «Ալմաստ» գործարանում տասներորդ հնգամյակում գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրման շնորհիվ ստացվել է մեկ միլիոն 280 հազար ռուբլու օգուտ, Չարենցավանի հաստոցաշինական արտադրամիավորումում՝ 300 հազար, Երևանի «Հիդրոհաղորդակ» արտադրամիավորումում՝ 154 հազար ռուբլի:

Եվ լավ է, որ ինչպես գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորման, այնպես էլ արտադրանքի որակի բարձրացման ու հուսալիության ապահովման հարցերը, որպես տնտեսական զարգացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման կարևոր գործոններ, մշտապես գտնվում են սկզբնական կուսկազմակերպությունների տեսադաշտում: Դրանք քննարկման առարկա են դառնում կուսակցական ժողովներում, բյուրոների ու կոմիտեների նիստերում, արտահայտվում կոլեկտիվների սոցիալիստական պարտավորություններում:

Սոցիալիստական մրցության լայն ծավալման շնորհիվ հաստոցաշինական ձեռնարկություններում անընդհատ բարելավվում են արտադրանքի որակական ցուցանիշները: Այժմ հաստոցաշինական արդյունաբերության ընդհանուր ծավալում պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը կազմում է 36,2 տոկոս: Որակի բարձրացման ասպարեզում արդյունավետ գործունեություն են ծավալում Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների, Կիրովականի ճշգրիտ հաստոցների, Հոկտեմբերյանի և Չարենցավանի հաստոցաշինական գործարանների սկզբնական կուսկազմակերպությունները: Այդ ձեռնարկություններում արտադրանքի ընդհանուր ծավալի 51—72 տոկոսը թողարկվում է որակի պետական նշանով: Լենինականի դարբնոցամամլիչային արտադրամիավորման կոլեկտիվը պարտավորվել է տասնմեկերորդ հնգամյակում այդ ցուցանիշը հասցնել 86 տոկոսի:

Գիտատեխնիկական առաջընթացի արագացման առումով խոշոր նշանակություն ունի արտադրության և գիտության սերտ կապի ապահովումը: Առա-

պատրաստման տեխնոլոգիական եղանակների մշակմանը, ստեղծել լայնական-սեպավոր եղանակով դարբնոցային նախապատրաստվածքներ՝ օգտագործելով պտուտակային գլանվածք և այլն:

Ընթացիկ հնգամյակում սոցիալիստական մրցությունը հաստոցաշինական ձեռնարկություններում շարունակվում է նոր թափով: Լայն արձագանք են գտնում երկրում ծնունդ առած հայրենասիրական նախաձեռնությունները: Հանրապետության հաստոցաշինարարները միահամուռ պաշտպանեցին հնգամյակի առաջին տարվա անձնական ու բրիգադային առաջադրանքները նոյեմբերի 7-ին կատարելու՝ Մոսկվայի և Լենինգրադի, տասնմեկերորդ հնգամյակում առանց բանվորների թվաքանակի ավելացման արդյունաբերական արտադրանքի աճն ապահովելու՝ Յարոսլավլի մարզի, նախագծային հզորությունները ժամանակին գործարկելու՝ Ռոստովի մարզի աշխատավորների նախաձեռնությունները, մետաղի և վառելիքաէներգետիկ ռեսուրսների տնտեսման՝ Ուրալի և Կուզբասի աշխատանքային կոլեկտիվների առաջավոր փորձը և սոցիալիստական մրցության աջթևայինների այլ շարժումներ:

Ամենուրեք համակողմանիորեն նախապատրաստվում են արժանավայել նշելու ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը: Հաստոցաշինարարները ոչ միայն հետևում են սոցմրցության ընթացքում Միությունում ծնունդ առած առաջավոր շարժումներին, այլև իրենք են հանդես գալիս սեփական, ընդօրինակման արժանի նախաձեռնություններով: Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում, Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների միավորումում խոր արմատներ է ձգել «ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակին՝ 60 հարվածային շաբաթ» նախաձեռնությունը: ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակի պատվին ծավալված սոցմրցությանն այժմ մասնակցում են 30 բրիգադ և 12 տեղամաս: Երևանի «Ալմաստ» գործարանի կոմերիտական-երիտասարդական չորս բրիգադ աշխատում է «Տասնմեկերորդ հնգամյակի յուրաքանչյուր տարին՝ 11 ամսում» նշանաբանով:

Մրցության ընթացքում առաջավոր կոլեկտիվները դրսևորում են կոմունիստաբար աշխատելու հիանալի օրինակներ, հաջողությամբ կատարում արտադրական ծրագիրը և թողարկում միայն գերազանց որակի արտադրանք: Այդ առումով առանձնանում են Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանի՝ Բ. Սահակյանի, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի՝ Վ. Մխիթարյանի, Չարենցավանի գործիքաշինական գործարանի՝ Լ. Նազարյանի ղեկավարած և այլ բրիգադներ: Կիրառելով բրիգադային աշխատանքի առաջավոր եղանակը՝ այդ փոքր կոլեկտիվների անդամները, իրոք, մեծ գործեր են անում: Նրանք աչքի են ընկնում պլանների կատարման բարձր ցուցանիշներով և գերազանց արտադրանքի թողարկմամբ:

Սոցիալիստական մրցության կազմակերպման գործում հաստոցաշինական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների համար գործողության ուղեցույց են «Տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի և «ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները: Դրանք նոր լիցք են հաղորդել ձեռնարկություններում ծավալված սոցիալիստական մրցությանը: Այդ մասսայական շարժման մեջ ներգրավված է հաստոցաշինական արդյունաբերության աշխատողների 95 տոկոսը: Մեծ ուշադրություն է նվիրվում մրցության բարձրագույն ձևի արմատավորմանը, 3.250 մարդ կրում է կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչումը: Շուրջ 338 բրիգադ, 161 արտադրամաս և 12 ձեռնարկություն պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանանալու համար:

Չնայած հանրապետության հաստոցաշինարարների կատարած դրական աշխատանքին, այդ բնագավառում դեռևս կան լուծման կարոտ խնդիրներ ու պրոբլեմներ: Մի շարք ձեռնարկություններում, ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում, թողարկվող արտադրանքը երկար ժամանակ չի նորացվում և ունի տեխնիկական ցածր մակարդակ (խառատային



պտուտակահան, կլոր հղկման, հորիզոնական ներտաշ հաստոցների առանձին տեսակներ): Արտադրությունում դանդաղ են ներդրվում առաջավոր տեխնոլոգիան, արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը՝ ավտոմատ մանիպուլյատորների կիրառմամբ:

Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի ստուգումներից պարզվել է, որ հաստոցագործիքաշինական մի շարք ձեռնարկություններում դեռևս լիովին ռացիոնալ կերպով չեն օգտագործվում թվածրագրային կառավարմամբ հաստոցները: Լենինականի հղկող հաստոցների, Երևանի տեխնոլոգիական հարմարանքների և ֆրեզերային հաստոցների գործարանների ղեկավարների ոչ հետևողական աշխատանքի և կուսկազմակերպությունների թույլ հսկողության հետևանքով մեծ քանակության ծրագրակառավարմամբ թանկարժեք հաստոցներ երկար ժամանակ չեն շահագործվում արդյունավետորեն: Երբեմն ձեռնարկությունների ղեկավարները, նախապես չսահմանելով դետալների, դրանց մշակման գործողությունների, աշխատատարության ցանկը, ձեռք են բերում թանկարժեք հաստոցներ, որոնք լավագույն դեպքում օգտագործվում են մեկ հերթափոխով: Թվածրագրային կառավարմամբ հաստոցները, ունենալով հսկայական հնարավորություններ, առանձին դեպքերում շահագործվում են որպես հատուկ հաստոց-ավտոմատներ: Հարկ է, մինչև թվածրագրային կառավարմամբ հաստոցների ստացումը, մտածել դրանց սպասարկող անձնակազմի մասին, որպեսզի հնարավոր լինի խուսափել պարապուրդներից: Ձեռնարկությունների կուսկազմակերպությունները պարտավոր են աշխատանքի այդ տեղամասը վերցնել հսկողության տակ և ղեկավարվել թվածրագրային կառավարմամբ հաստոցների օգտագործման արդյունավետությունը և դրանց աշխատանքի հերթափոխայնության ու օգտագործման գործակիցը բարձրացնելու վերաբերյալ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ: Երևանի տեխնոլոգիական հարմարանքների արտադրամիավորման ձեռնարկություններում դեռևս չի կիրառվում սակավաթափոն տեխնոլոգիան, որի հետևանքով ցածր է սև մետաղների գլանվածքի օգտագործման գործակիցը: Մի քանի ձեռնարկություններ չեն կատարում նյութերի ծախսի նորմաների իջեցման սահմանված առաջադրանքները:

Կուսակցությունն ու կառավարությունը միշտ էլ հատուկ ուշադրություն են նվիրում մեքենաշինական արդյունաբերության հաստոցագործիքաշինական ճյուղի զարգացմանն ու կատարելագործմանը: Այդ հարցերն էր շոշափում մեքենաշինության ճյուղի աշխատողների՝ թողարկվող մեքենաների ու սարքավորումների որակի ու տեխնիկական մակարդակի բարձրացմանը նվիրված համամիութենական խորհրդակցությունը, որը տեղի ունեցավ անցած տարվա մայիսին, Մոսկվայում: Այդ ճյուղի հիմնական խնդիրները հստակորեն ձևակերպված են խորհրդակցության մասնակիցներին ընկեր Լ. Ի. Բրեժնևի ուղղած ողջույնում: Այն հանրապետության հաստոցաշինարարների համար գործողության ծրագիր է: Համամիութենական խորհրդակցության նյութերը դարձան հանրապետության հաստոցաշինական ձեռնարկությունների դիրեկտորների խորհրդի՝ 1981 թ. Չարենցավանում տեղի ունեցած նիստի հանգամանալի քննարկման առարկա: Դիրեկտորների խորհուրդն այդ խորհրդակցության պահանջների ու հանձնարարականների հիման վրա սահմանեց հաստոցաշինական գործարանների հիմնական խնդիրները թողարկվող արտադրանքի որակի և տեխնիկական մակարդակի բարձրացման գործում: Ճշտվեց նաև ժողովրդական սպառման ապրանքների թողարկման անհրաժեշտությունը՝ որպես «Ա» խմբի ձեռնարկությունների առաջնահերթ խնդիր:

ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններով վերելքի լայն հեռանկարներ են բացվում նաև հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության առջև: Նախատեսվում է զգալիորեն մեծացնել հաստոցների և գործիքների թողարկման ծավալը, էապես բարձրացնել դրանց տեխնիկական մակարդակն ու որակը, հուսալիությունը, ավե-

լացնել թվածրագրային կառավարմամբ, գործիքների փոփոխմամբ ունիվերսալ հաստոցների, դիմացկուն ծածկույթներով, գերամուր նյութերից պատրաստված գործիքների, սինթետիկ ալմաստների արտադրությունը։

Այդ առաջընթացից անմասն չի մնում նաև մեր հանրապետությունը։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցառումներ են մշակված հանրապետության հաստոցագործիքաշինական բոլոր գործարաններում։ Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում նախատեսվում է թողարկել թվածրագրային կառավարմամբ և բարձր ճշտությամբ խառատապտուտակահան հաստոցներ։ Թվածրագրային կառավարման համակարգով հագեցած, էլեկտրաէրոզիոն ժամանակակից ու հեռանկարային նոր մոդելի հաստոցներ է թողարկելու Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանը։ Այդ համակարգը հնարավորություն կընձեռի ուղղել և փոփոխել մշակվող դետալների եզրագծերի մասշտաբը, խմբագրել ծրագիրը։ Երևանի «Ալմաստ» գործարանում կյուրացվի խոշոր ֆրակցիայի միաբյուրեղային ալմաստների, քարամշակման արդյունաբերության համար ալմաստային կտրող և հղկող գործիքների արտադրության եղանակը։

Հանրապետության հաստոցաշինարարների առջև ծառացած հիմնական պրոբլեմներից մեկը սարքավորումների հագեցվածության բարձրացումն է։ Դա կապահովի արտադրանքի մրցունակությունը և կընդլայնի նրա արտահանման հնարավորությունները։ Հաշվի առնելով գործիքաշինական ձեռնարկությունների առկայությունը հանրապետությունում՝ նպատակահարմար է դրանք մասնագիտացնել մետաղակտրիչ հաստոցների համար գործիքների արտադրությամբ։ Հաստոցաշինության արդյունավետության բարձրացման կարևոր գործոններից են արտադրանքի ունիֆիկացումը և միջճյուղային կոոպերացման կապերի ընդլայնումը։ Արծարծված այս խնդիրների լուծման համար կան անհրաժեշտ պայմաններ ու նախադրյալներ։ Ընթացիկ հնգամյակում ևս մեր հաստոցաշինարարները կնվաճեն նոր, բարձր բնագծեր։

---

# ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԱԶԴԱԿԸ

**Բ. Մ. ՄԿՐՏՉՅԱՆ**
«Կոմունիստ» լրագրի խմբագիր

ՄԵՐ ԵՐԿԻՐԸ, սովետական բոլոր մարդիկ պայքարելով ՍՄԿԿ XXVI համագումարի պատմական որոշումների կենսագործման համար, ցուցաբերում են մեծ ակտիվություն աշխատանքում, հավատարմություն՝ լենինիզմին, ՍՄԿԿ քաղաքականությանը, որի նպատակն է աշխատավորների կյանքի նյութական մակարդակի հետագա բարձրացումը, սովետական պետության պաշտպանունակության ամրապնդումը։

Հետպատերազմյան հնգամյակների տարիներին մենք կուտակել ենք տնտեսական ու կուլտուրական շինարարության հսկայական փորձ, սովորել ենք ավելի լավ վարել մեր տնտեսությունը, առավել արդյունավետ օգտագործել արտադրության ռեզերվները, ավելի լավ կազմակերպել բրիգադների, արտադրամասերի, ձեռնարկությունների ու ամբողջ ճյուղերի աշխատանքը։ Առաջավոր փորձի յուրացումը, աշխատանքի կազմակերպման նոր, առաջավոր ձևերի որոնումն ու ներդրումը դարձել են մեր ամենօրյա արտադրական գործունեության պրակտիկան։ Երկրի աշխատանքային կոլեկտիվների այդ ողջ կազմակերպված ջանքերի մեջ գլխավոր դերը խաղում է սոցիալիստական մրցությունը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, մարդկանց գործարար ու ինտերնացիոնալ մերձեցման այդ զորեղ լծակը։

Զարգացած սոցիալիզմի հասարակությունն իր պրակտիկ գործունեությամբ, գաղափարական նկրտումների և քաղաքական նպատակների միասնությամբ զոդված մարդկանց արտադրակապերի ու հոգևոր հաղորդակցումների մի վիթխարի դինամիկ սիստեմ է։ Բայց մեր կյանքի այդ դինամիկան բնորոշվում է տեղական տնտեսական սիստեմների և ազգային հատկանիշների զարգացման առանձնահատկությունների բազմազանությամբ, որոնք միշտ էլ հաշվի է առել մեր կուսակցությունը։ Դրա վառ վկայությունն է կուսակցության մշակած ՍՍՀՄ պարենային ծրագիրը, որ քննարկվեց ու հաստատվեց ՍՄԿԿ Կենտկոմի այս տարվա մայիսյան պլենումում։

Անցած տարիներին սովետական հասարակության բազմակողմանի կյանքի լուսաբանման աշխատանքի մեծ փորձ են կուտակել մեր լրագրերն ու ամսագրերը։ Կատարելով կոլեկտիվ պրոպագանդիստի և կոլեկտիվ ագիտատորի իր ֆունկցիան, մամուլը վառ կերպով ցուցադրում է սովետական կարգերի և սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունները, սովետական մարդկանց սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը։ Լրագրերի էջերում համոզիչ կերպով պրոպագանդվում են սոցիալիզմի հասումները, առաջավոր փորձը, խրախուսվում են արժեքավոր նախաձեռնություններն ու ձեռնարկումները։

Վերջին տարիներս զգալիորեն մեծացել է մեր մամուլի ազդեցությունը նաև տնտեսական ու կուլտուրական շինարարության ամենատարբեր հրապարա

խնդիրների լուծման գործում։ Լրագրերն ու ամսագրերը հետևողականորեն ու համակողմանի լուսաբանում են արդյունաբերության և գյուղատնտեսության, կապիտալ շինարարության, տրանսպորտի և նյութատեխնիկական մատակարարման կարևոր, հանգուցային հարցերը։ Համարից համար մշտական վերտառությամբ վերլուծական նյութեր են հրապարակվում սոցիալիստական մրցության մասին, որոնցում ո՛չ միայն պրոպագանդվում է առաջավորների փորձը, այլև քննադատվում են տվյալ աշխատանքում եղած ձևականությունը, թերությունները ու թերացումները։

ՍՄԿԿ XXVI համագումարին Կենտկոմի տված հաշվետվության մեջ Լ. Ի. Բրեժնևը նշել է. «Շատ կարևոր է, որ պրոպագանդան չշրջանցի սուր թեմաները, չերկնչի շոշափել այսպես կոչված դժվարին հարցերը։ Մեր կուսակցության քաղաքականությունը պարզ է։ Եվ մենք պատրաստ ենք պատասխանելու ամեն տեսակ հարցերին, որոնք առաջանում են սովետական մարդկանց մեջ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 124)։

Առաջնորդվելով կուսակցության համագումարի այս ցուցումով, լրագրողները համարձակ ձեռնամուխ են լինում քաղաքի ու գյուղի տնտեսական բարդ պրոբլեմների լուսաբանմանը, քաջ գիտենալով, որ կոմունիզմի համար մղվող պայքարի գլխավոր ասպարեզը ժողովրդական տնտեսությունն է, էկոնոմիկան։ Հենց այստեղ, նյութական արտադրության ոլորտում են լուծվում էկոնոմիկայի հետագա վերելքի, մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման ամենակարևոր հարցերը։ Հենց այստեղ, նյութական ոլորտում է մեր մամուլը նպատակամղված ու համառորեն իրականացնում կոլեկտիվ կազմակերպչի իր ֆունկցիան, անմիջական սերտ կապերով իրար միացնելով կոմունիստական շինարարության տեսությունն ու պրակտիկան, մեր կուսակցության քաղաքականությունը կապելով մասսաների աշխատանքային գործունեության հետ, հասարակության շահերը՝ յուրաքանչյուր աշխատավորի շահերի հետ։

Սովետական լրագրողների համար մամուլի երեք գլխավոր ֆունկցիաների՝ կոլեկտիվ պրոպագանդիստի, ագիտատորի և կազմակերպչի, հմուտ և գործուն միացման վառ օրինակ է «Պրավդա», «Իզվեստիա», «Սոցիալիստիչեսկայա ինդուստրիա», «Սելսկայա ժիզն» և կենտրոնական այլ լրագրերի ամենօրյա գործունեությունը, լրագրեր, որոնք մշտապես իրենց տեսադաշտում են պահում հնգամյակի խոշորագույն կառույցները, Ղազախստանի և ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտու ագրարային պրոբլեմները, իրենց էջերում քննարկում են տնտեսական մեխանիզմի կատարելագործման բարդ հարցերը, ընդ որում հաճախ հանդես գալով որպես առաջամարտիկներ։ Հենց նրանք՝ սովետական մամուլի այդ կապիտաններն են, որ մեր ողջ մամուլի համար բարձր պրոֆեսիոնալության և պարտաճանաչության ոգեշնչող օրինակ են։

Կազմակերպչական ակտիվ աշխատանքն այժմ դարձել է մասսայական ինֆորմացիայի բոլոր միջոցների գործունեության գլխավոր ուղղությունը։ ՍՄԿԿ XXV համագումարում մշակված էկոնոմիկայի ինտենսիվացման կուրսը, կողմնորոշումը դեպի աշխատանքի որակական ցուցանիշները սովետական լրագրողներն ընդունեցին որպես աշխատանքի կազմակերպման ողջ սիստեմի ռեզերվների, արտադրության ու այդ սիստեմի կատարելագործման որոնման պահանջ, կարևորագույն կառույցներում, արտադրական խոշոր կոլեկտիվներում գործերի ընթացքի նկատմամբ մշտական վերահսկողություն սահմանելու դիրեկտիվ։ Մամուլի այդ կազմակերպչական աշխատանքն ավելի ակտիվացավ ու որակապես բարելավվեց ՍՄԿԿ XXVI համագումարից հետո, որը խնդիր դրեց սովետական լրագրողների առաջ՝ համակողմանի նպաստել տնտեսական զարգացման գլխավոր սկզբունքի իրականացմանը, ամբողջ ուժով շեշտեց, որ էկոնոմիկան պետք է լինի խնայողական։ Հազարավոր լրագրեր ու ամսագրեր, ղեկավարվելով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներով, իրենց էջերում պայքար են ծավալել հանուն տնտեսման ու խնայողության, տեղերում՝ արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության ոլորտում, ստեղծելով վերահսկիչ կետեր ու արտագնա խմբագրություններ, այդ աշխատանքում ներգրավելով բանգյուղթղթակիցների ու ժողովրդական վերահսկիչների հոծ զանգվածներ։



Ակտիվորեն թափանցելով արտադրական կոլեկտիվների կյանքի ոլորտը, պատմելով սովետական մարդկանց աշխատանքային հերոսության մասին, օգնելով կուսակցական մարմիններին՝ անպայման կատարելու պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները, մեր մամուլը, միաժամանակ, հասնում է քաղաքական ակնբախ արդյունքների։ Կոմունիզմի համար մղվող պայքարի գլխավոր ասպարեզը, ինչպես արդեն նշվեց, ժողովրդական տնտեսությունն է։ Իսկ սոցիալիստական էկոնոմիկան ժողովրդատնտեսական մի հսկա կոմպլեքս է, որն օրգանապես ի մի է ձուլել ազգային հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի էկոնոմիկան, նրանց տընտեսական զարգացումը ենթարկելով եղբայրության, բարեկամության ու տնտեսական փոխօգնության օրենքին։ Այդ բարեկամությունն ու եղբայրական փոխօգնությունը ծնունդ են մեծ Հոկտեմբերի և լենինիզմի գաղափարների, լենինյան ազգային քաղաքականությունը հաջողությամբ կենսագործող ՍՄԿԿ ջանքերի։ Սովետական իշխանության առաջին իսկ տարիներից կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը վստահորեն նպատակամղվեց այն բանին, որ Ռուսաստանի հետամնաց ազգային ծայրամասերը որքան հնարավոր է ավելի արագ հասնեն կենտրոնի զարգացման մակարդակին։ Մեր բոլոր հնգամյա պլանների հիմքում ակնբախ է կուսակցության այդ քաղաքական կուրսը։ Այսօր մենք հպարտությամբ հավաստում ենք, որ պատմական այդ խնդիրը լուծվել է հաջողությամբ. մեր երկրում այժմ չկան հետամնաց ռեգիոններ, ազգային հանրապետություններից ամեն մեկն այսօր դարձել է տնտեսապես ու կուլտուրապես զարգացած երկիր։ Այստեղ նույնպես կարևորագույն դեր է խաղում մեր երկրի բոլոր ազգերի սերտ համագործակցությունը և, ամենից առաջ, ռուս ժողովրդի անշահախնդիր աջակցությունը։

Այսօր, ինչպես երբեք, ամուր ու անքակտելի են ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական կապերը, միաձույլ է նրանց համախմբվածությունը կոմունիստների լենինյան կուսակցության շուրջը, նրանց բարեկամությունն ու եղբայրությունը խարսխվում են կոմունիստական հասարակության կառուցման բնագավառում աշխատանքային համագործակցության գրանիտե հիմքի վրա, պատմական նպատակների միասնության և ճակատագրերի անքակտելիության վրա։

ՍՄԿԿ XXVI համագումարում հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևը, խոսելով ՍՍՀՄ ժողովուրդների քաղաքական ու տնտեսական շահերի միասնության մասին, նշել է. «Մեր հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական ինտենսիվ զարգացումը արագացնում է դրանց բազմակողմանի մերձեցման պրոցեսը։ Տեղի են ունենում ազգային կուլտուրաների ծաղկում ու փոխհարստացում, սոցիալական ու ինտերնացիոնալ նոր հանրության՝ միասնական սովետական ժողովրդի կուլտուրայի ձևավորում։ Այդ պրոցեսը մեզանում ընթանում է այնպես, ինչպես որ այն պետք է ընթանա սոցիալիզմի օրոք՝ հավասարության, եղբայրական համագործակցության ու կամավորության հիման վրա» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 92)։ Աշխատավորների ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների լենինյան բարեկամության ոգով դաստիարակմանը համակողմանի նպաստում է եղբայրական հանրապետությունների, երկրամասերի ու ավտոնոմ մարզերի միջև ծավալված սոցիալիստական մրցության կանոնավոր լուսաբանումը, որի ընթացքում ծանրակշիռ ու համոզիչ օրինակներով դրվատվում է մեր ժողովուրդների անկոտրում կամքը՝ կենսագործելու կոմունիստական կուսակցության որոշումները, որոնք ուղղված են մեր բազմազգ պետության առավել բարգավաճման նպատակին։

Մեր հանրապետությունների սոցիալիստական մրցությունը ո՛չ միայն մերձեցնում է աշխատանքային բազմազգ կոլեկտիվներին, այլև նպաստում աշխատավորական լայն խավերի հետագա հոգևոր միասնությանը։ Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության ոլորտում մասսայական ինֆորմացիայի միջոցների ակտիվ դերի օրինակ է հանրապետական «Սովետական

Հայաստան» և «Կոմունիստ» լրագրերի աշխատանքը Անդրկովկասի հանրապետությունների և Ռոստովի մարզի սոցիալիստական մրցության ընթացքի լուսաբանման գործում։ Առավել ծավալվում ու նոր թափ է ստանում այդ մրցությունը, որի նախաձեռնողներն էին Անդրկովկասի երեք հանրապետությունների մայրաքաղաքների և Դոնի Ռոստովի կուսակցական կազմակերպությունները՝ մամուլի աշխատողների ակտիվ մասնակցությամբ։ Հանրապետական լրագրերի էջերում տպագրվել են նյութեր մրցող ձեռնարկությունների աշխատանքային հասումների մասին, աշխատանքային կոլեկտիվների նամակներ, պարբերաբար հրապարակվել են փոխադարձ պարտավորությունները և ամփոփվել արդյունքները։ Շուտով այդ աշխատանքում ներգրավվեցին քաղաքային ու շրջանային լրագրերը, ընդլայնվեցին մրցության շրջանակները՝ ընդգրկելով Լենինականի, Ռուսթավիի, Կիրովականի և Սումգաիթի ձեռնարկությունները։

Հայաստանի շրջանային մամուլը հանդես եկավ որպես հանրապետության Իջևանի, Շամշադինի, Գորիսի, Կալինինոյի, ադրբեջանական Ղազախի, Լաչինի, Թաուզի, վրացական Բոլնիսի և Մառնեուլի գյուղական շրջանների մրցության նախաձեռնող։ Մրցող կոլեկտիվների արտադրական համագործակցությունը հարստացրին մշակութային փոխանակումները— գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների ելույթները, համատեղ անցկացված տոնական միջոցառումները, բարեկամության երեկոները և այլն։ Այս ամենը, անշուշտ, մեծ դեր է խաղում աշխատավորների ինտերնացիոնալ մերձեցման, նրանց եղբայրության և աշխատանքային բարեկամության ոգով դաստիարակելու գործում։

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը, ազգային կուլտուրաների փոխհարստացման, մեր երկրի ժողովուրդների հետագա հոգևոր մերձեցման գործը աներևակայելի են առանց մամուլի օրգանների, մասսայական ինֆորմացիայի բոլոր միջոցների մասնակցության։ Մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության միջոցով աշխատավոր զանգվածներին, սովետների երկրի բոլոր քաղաքացիներին է հասնում կուսակցության խոսքը։ Մեր լրագրերն ու ամսագրերը, մասսայական ինֆորմացիայի միջոցներն աշխատավորներին պատմում են եղբայրական հանրապետությունների աշխատանքային նորանոր մեծագործությունների, գիտական ու կուլտուրական հասումների մասին։ Իրենց քաղաքական, պրոպագանդիստական աշխատանքի այդ կարևորագույն տեղամասում սովետական լրագրողները կուտակել են մեծ փորձ, սակայն տպագիր խոսքի գաղափարախոսական ներգործությունն ավելի արդյունավետ դարձնող նյութերի մշակման ու հաղորդման նոր, ավելի արտահայտիչ ու հետաքրքրական ձևերի ու եղանակների որոնումը չընդհատվող մի պրոցես է։

Այդ որոնումների օրինաչափ արդյունքն իր ժամանակին մամուլի օրգանների կազմակերպչական աշխատանքի այնպիսի ձևերի երևան գալն էր, ինչպիսին է շեֆությունը երկրի մեծ, բազմազգ կոլեկտիվ ունեցող խոշոր նորակառույցների և արտադրական այլ օբյեկտների ու ճյուղերի նկատմամբ։ Այժմ լրագրերի և մասսայական ինֆորմացիայի այլ միջոցների շեֆական աշխատանքը դարձել է համատարած երևույթ։ Մամուլի օրգանները բարոյապես աջակցում են իրենց ենթաշեֆ կազմակերպություններին, պրոպագանդում նրանց հաջողությունները, քննադատում թերությունները, նպաստում առաջավոր փորձի լայն տարածմանը և նոր ռեզերվների հայտնաբերմանը, օգնում են կազմակերպելու նրանց կենցաղն ու կուլտուրական կյանքը։ Դժվար է գերագնահատել մամուլի օրգանների այդպիսի աշխատանքի կարևորությունն ու օգտակարությունը։ Բայց մամուլի այդ կազմակերպչական գործունեությունն ավելի ներգործուն, գաղափարապես ու քաղաքականապես առավել արդյունավետ է լինում, երբ հարստացվում է ինտերնացիոնալ խոր բովանդակությամբ։

Շեֆական աշխատանքի հենց այդպիսի փորձ է կուտակել հայկական հանրապետական «Կոմունիստ» լրագիրը, որն արտադրական բարձր արդյունավետության հասումների նպատակաուղղվածությունը զուգորդում է աշխա-



տանքային կոլեկտիվների ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրների հետ։ Այդ փորձն ստեղծվել և կատարելագործվել է տասներորդ հնգամյակի կարևորագույն կառույցի՝ հայկական ատոմային էլեկտրակայանի շինարարության նկատմամբ լրագրի շեֆական գործունեության ընթացքում։ Հայաստանի շինարարների հետ մեկտեղ ատոմային էլեկտրակայանը կառուցում էին նաև Ռուսաստանյան Ֆեդերացիայի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Վրաստանի և մյուս հանրապետությունների կապալառու և ենթակապալառու տասնյակ նախագծային կազմակերպություններ։

Կառույցում ստեղծելով մշտական թղթակցական կետ՝ «Կոմունիստ»-ն ատոմակայանին էր նվիրում հատուկ էջեր, որտեղ ակնարկներ ու թղթակցություններ էին հրապարակվում եղբայրական հանրապետությունների պատվիրակների, նախագծային կազմակերպությունների ու ձեռնարկությունների մասին, որոնք եղբայրական հանրապետություններից Հայաստանին մատակարարում էին եզակի սարքավորումներ։ Խմբագրությունն իր թողարկած համարներում ձգտում էր հասնել գաղափարաքաղաքական արդյունավետության, ցույց տալ այն վիթխարի ավանդը, որ ատոմակայանի շինարարության գործում ներդրել են երկրի մյուս եղբայրական հանրապետությունների ներկայացուցիչները։ Լրագրի առաջին էջում իր հաստատուն տեղն էր գրավում «Պատվո տախտակ» բաժինը, որտեղ տպագրվել են սոցիալիստական մրցության հաղթողների լուսանկարները։

Մեր երկրի ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, հանրապետության աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության խթանմանն էր ծառայում նաև հայկական ատոմակայանում խմբագրության կազմակերպած մրցությունը՝ «Բանվորական էստաֆետ» սկզբունքով։ Այդ մրցության ոլորտը ներգրավված են սարքավորումների մատակարարները։ «Բանվորական էստաֆետ»-ին գործարար աջակցություն ցույց տվին կուսակցության Լենինգրադի, Կրիվոյ Ռոգի, Տագանրոգի, Քութայիսիի քաղկոմները, Իրկուտսկի, Խարկովի, Սումիի մարզկոմները։

Հայաստանի մամուլի օրգանների համար շեֆական աշխատանքի լայն ասպարեզ բացեց մետրոպոլիտենի կառուցումը հանրապետության մայրաքաղաք Երևանում։ Հնգամյակի այդ կառույցը, հայկական ատոմակայանի և Իջևան—Հրազդան երկաթուղային մայրուղու նման, բառիս բուն իմաստով դարձավ համամիութենական։ Մոսկվայից, Լենինգրադից, Կիևից, Մինսկից, Թբիլիսիից, Բաքվից Երևան ժամանեցին մետրոշինարարների բրիգադներ, որոնք պետք է ստանձնեին կարևորագույն աշխատանքների հիմնական ծանրությունը, պատրաստեին մետրոշինարարների տեղական կադրեր։ Եղբայրական հանրապետությունների պատվիրակները և Հայաստանի թունելագործների ջոկատները պատվով կատարեցին իրենց աշխատանքային դժվար հերթափոխը, և հանրապետական լրագրերը հատուկ էջեր ու թղթակցություններ էին նվիրում նրանց աշխատանքային առօրյային։ Դրանցում կրկին կարևոր տեղ էր գրավում երևանյան մետրոյի շինարարությանը ողջ երկրի աշխատանքային մասնակցության թեման. ընթերցողը համոզվում էր, որ մեր բոլոր կառույցները, այդ թվում և մետրոն, աներևակայելի էին առանց եղբայրական հանրապետությունների համագործակցության ու փոխօգնության, որ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն ամուր է իր նպատակների ու ջանքերի միասնությամբ։

«Սովետական Հայաստան», «Կոմունիստ» և «Երեկոյան Երևան» լրագրերն իրենց շեֆական աշխատանքում հասնելով գաղափարախոսական ու դաստիարակչական ավելի մեծ արդյունքի, մետրոշինարարության կուսակցական կազմակերպության ակտիվ մասնակցությամբ սոցիալիստական մրցություն էին կազմակերպում բրիգադների և հանքախորշերի միջև, լուսաբանում աշխատանքային մրցության արդյունքները, սիստեմատիկաբար խրախուսելով լավագույն կոլեկտիվներին, հատկապես՝ եղբայրական հանրապետությունների պատվիրակներին։ Ստանձնելով մետրոշինարարության շեֆությունը՝ լրագրերը սահմանում էին իրենց մրցանակներն ու պատվո դրոշները։ Ամենից հաճախ մրցության հաղթող էին դառնում Լենինգրադի «Մետրոշինի» հորատանցողնե-

փորձը, որը հաջողությամբ իրականացվել է Վրացական ՍՍՀ Սեբաշայի շրջանի
ագրոարդյունաբերական միավորումում: Հայտնի է, որ ՍՄԿԿ Կենտկոմի 1982
Թվականի մայիսյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը հատուկ ուշադրություն
նվիրեց այդ որոնումներին ու գիտափորձերին, նշելով, որ «մեր երկրում գյու-
ղատնտեսության տարբերիչ գիծը արտադրական և բնակլիմայական այն պայ-
մանների արտակարգ բազմազանությունն է, որոնցում կատարվում է գործը:
Այստեղ տեղ չունեն շաբլոնները, չի կարող այնպես լինել, որ, ինչպես ասվում
է, «բոլորին նույն սանրի չափով խուզեն»: Կենտկոմի պլենումի այսպիսի դրույ-
թը օգնում է մամուլի օրգաններին, մասսայական ինֆորմացիայի բոլոր մի-
ջոցներին՝ պարենային ծրագրի կատարման համար ծավալելու լայն աշխա-
տանք, պրոպագանդելու առաջավորների փորձը, առաջադրելու և արծարծելու
ագրոարդյունաբերական կոմպլեքսի հրատապ հարցերը՝ հաշվի առնելով
առանձին հանրապետությունների, մարզերի ու շրջանների առանձնահատկու-
թյունը:

Կուսակցության ընդունած ՍՍՀՄ պարենային ծրագիրը կատարելու համար
պահանջվում են նոր ջանքեր, գիտելիքներ և կազմակերպչական արվեստ:
Ավելի կմեծանա մասսայական ինֆորմացիայի միջոցների դերն ու նշանա-
կությունը ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումների կատարման,
սոցիալիստական մրցության ծավալման, մասսաների շրջանում գաղափարա-
խոսական աշխատանքն ուժեղացնելու, նրանց ՍՄԿԿ-ին, ժողովուրդների լե-
նինյան բարեկամությանն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմին հավա-
տարմության ոգով դաստիարակելու գործում:

---

# ՊԱՅՄԱՆԱԳՐԱՅԻՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ

**Կ. Ա. ՊԱՊՅԱՆ**
ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի
արդյունաբերության, տրանսպորտի և կապի
բաժնի վարիչ

Մեր ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ արդյունաբերության աշխա-
տողները, հաջողությամբ ավարտելով տասներորդ
հնգամյակը, նոր եռանդով ձեռնամուխ են եղել տասնմեկերորդ հնգամյակի
առաջադրանքների կատարմանը: 1981 թ. պլանը արտադրանքի իրացման գծով
կատարվել է 102,3 տոկոսով, իսկ ապրանքային արտադրանքինը՝ 103,3 տո-
կոսով: Նախորդ տարվա համեմատությամբ արտադրանքի ծավալն աճել է 7,3
տոկոսով: Կատարվել են նաև արտադրանքի կարևորագույն տեսակների թո-
ղարկման առաջադրանքները: Այդուհանդերձ, անցյալ տարվա արդյունքների
վերլուծությունը ցույց է տալիս, որ արտադրամիավորումների և ձեռնարկու-
թյունների մի մասը խիստ անբավարար է աշխատել, չի կատարել պետական
առաջադրանքները: Արտադրական 545 միավորումներից ու ձեռնարկություննե-
րից 36-ը չի կատարել արտադրանքի իրացման, իսկ 35-ն՝ ապրանքային արտա-
դրանքի թողարկման պլանը, որի հետևանքով ժողովրդական տնտեսությունը
պակաս ստացավ 30,3 միլիոն ռուբլու արտադրանք: Դեռ ավելին, 149 արտա-
դրամիավորում և ձեռնարկություն, կամ հանրապետության գրեթե յուրաքան-
չյուր երրորդ միավորում կամ ձեռնարկություն չկատարեց արտադրանքի ա-
ռաքման պայմանագրային պարտավորությունը: Այդ պատճառով Միության
բազմաթիվ ձեռնարկություններ և կազմակերպություններ չստացան իրենց
համար խիստ անհրաժեշտ արտադրանքի շատ տեսակներ՝ 107 միլիոն ռուբլու
ընդհանուր գումարով:

Հարկ է նշել, որ տնտեսական շատ ղեկավարներ դեռևս շարունակում են
աշխատել հին ոճով՝ մի կերպ կատարել համախառն արտադրանքի ընդհանուր
ծավալի իրացման պլանը, իսկ հետևանքը նրանց քիչ է հետաքրքրում: Ցավով
պետք է նշել, որ տնտեսական նման ղեկավարների գործունեությունը հաճախ
չի դատապարտվում համապատասխան արտադրամիավորումների ու ձեռնար-
կությունների կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների,
մինիստրությունների ու գերատեսչությունների կողմից:

Փորձենք ցույց տալ, թե ժողովրդական տնտեսությունը ինչպիսի հսկա-
յական վնասներ է կրում տնտեսական պայմանագրերով սահմանված արտա-
դրանքի առաքման պլանները առանձին ձեռնարկությունների կողմից ձախո-
ղելու հետևանքով:

Արտադրական ձեռնարկությունը չի կարող գործել մեկուսացված, այն
բազմաթիվ այլ ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ տնտե-
սական կապերի մեջ է: Դրանց փոխհարաբերությունները կարգավորվում և
օրենքի ուժ են ստանում կնքվող տնտեսական պայմանագրերի և ֆոնդային
կարգագրերի միջոցով: Երբ այդ պայմանագրային պարտավորությունները կա-
տարվում են ճիշտ և ժամանակին, դա հնարավորություն է ընձեռում տնտե-
սապես փոխկապակցված ձեռնարկություններին աշխատելու նորմալ, արդյու-

նավետ, կատարելու պետական առաջադրանքները։ Իսկ երբ դրանցից նույնիսկ մեկը չի կատարում իր պարտավորությունները, կամ այն կատարում է թերի և ուշացումով, ապա խախտվում է տնտեսական կապերում ներգրավված բոլոր ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքը, խափանվում առաջադրանքների կատարումը։ Ահա թե ինչու տնտեսական պայմանագրերի խախտումը դիտվում է որպես պետական կարգապահության խախտում և մեղավորների նկատմամբ կիրառվում են տնտեսական պատասխանատվության խիստ միջոցներ։ Այն արտադրամիավորումները և ձեռնարկությունները, որոնք ժամանակին չեն առաքում սահմանված քանակության ու տեսակների արտադրանք, վճարում են տուգանք, որի գումարը կարող է հասնել մինչև չառաքած արտադրանքի արժեքի 50 տոկոսին։

Արտադրանքը ժամանակին չառաքելու պատճառով 1981 թ. մեր հանրապետության արտադրամիավորումները և ձեռնարկությունները շուրջ 7,5 միլիոն ռուբլու տուգանք են վճարել։ Խոսքն այստեղ միայն վարչական կարգով գանձված տուգանքի մասին է։ Իրականում տուգանքների գումարն անհամեմատ ավելի մեծ է, որովհետև միավորումներից ու ձեռնարկություններից շատերն արտադրանքի առաքման պլանը չկատարելու դեպքում ինքնակամ վճարում են տուգանքը և գործը չեն հասցնում պետական արբիտրաժին։

Սպառողներին ժամանակին արտադրանք չառաքելու համար 1981 թվականին «Հայհանքջրերի» արտադրամիավորումը վճարել է 248,7 հազար ռուբլի տուգանք, «Հայծխախոտ» արտադրամիավորումը՝ 132,5 հազար, Երևանի տրիկոտաժի №№ 1 և 2 արտադրամիավորումները՝ համապատասխանաբար 138,3 հազար և 155,9 հազար ռուբլի, Լենինականի կարի արտադրամիավորումը՝ 115 հազար, «Հայէլեկտրամեքենա» միավորումը՝ 200 հազար, Երևանի մահուդի ֆաբրիկան՝ 79,4 հազար, Գորիսի տրիկոտաժի ֆաբրիկան՝ 76,2 հազար ռուբլի և այլն։

Վճարած տուգանքների սոսկ թվարկումը չի արտահայտում ժողովրդական տնտեսությանը հասցված ամբողջ վնասը, որը շատ ավելի մեծ է։ Օրինակ, «Պոլիվինիլացետատ» արտադրամիավորումը 1981 թ. Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանին պակաս առաքեց 4,5 հազար տոննա ացետիլցելյուլոզ։ Դրա հետևանքով վերջինս տրիկոտաժի ֆաբրիկաներին չտվեց 541 տոննա քիմիական թել և 636 տոննա ացետատային ժապավեն՝ ծխախոտի ֆիլտրեր արտադրելու համար։ Տրիկոտաժի ֆաբրիկաները, «Հայծխախոտ» արտադրամիավորումը և այլ ձեռնարկություններ, չստանալով վերոհիշյալ նյութերը, վիժեցրին արտադրական պլանների և պայմանագրերով ստանձնած պարտավորությունների կատարումը։

Հանրապետության էլեկտրական մեքենաներ արտադրող ձեռնարկությունները, կաբելային լարեր, էլեկտրական սարքեր, ռետինատեխնիկական իրեր թողարկող և շատ այլ գործարաններ կոոպերացման կարգով մեծ թվով ձեռնարկությունների առաքում են արտադրանքի շատ տեսակներ, որոնք այդտեղ կոպլեկտավորվում են և նրանց կողմից ուղարկվում այլ ձեռնարկությունների ու կազմակերպությունների։ Կոոպերացիոն առաքման առաջադրանքի թերակատարումը խախտում է տվյալ ձեռնարկությունների ու կազմակերպությունների ողջ շղթայի ռիթմիկ աշխատանքը, պլանային փոխկապակցվածությունը արտադրահզորությունների, նյութական, էներգետիկ և աշխատանքային ռեսուրսների համաչափ ու արդյունավետ օգտագործումը։

Հաստոցաշինական, վերելակաշինական, սարքաշինական, մեքենաշինական ձեռնարկությունները, թերակատարելով արտադրանքի առաքման առաջադրանքները, խախտում են արտադրական նոր ձեռնարկությունների կառուցման և գործարկման պլանները, պատճառ դառնում հսկայական կապիտալ միջոցների սառեցման։

Վիճակը նույնն է թեթև, սննդի, տեղական, կահույքի արդյունաբերության շատ ձեռնարկություններում, որտեղ ժողովրդական սպառման ապրանքների առաքման պլանների թերակատարումը դժվարություններ է ստեղծել բնակչության անհրաժեշտ սպառման ապրանքներով բավարարելու գործում։ 1981 թ. հանրապետության ձեռնարկությունները առևտրական ցանցին պակաս առա-



քեցին շուրջ 45 միլիոն ռուբլու արտադրանք, այդ թվում թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները՝ 25 միլիոն, սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները՝ 7 միլիոն ռուբլու և այլն։

Արտադրանքի առաքման պլանների թերակատարումը նյութական կորուստներից բացի խոշոր վնաս է հասցնում նաև բարոյական իմաստով։ Քիչ չեն դեպքերը, երբ արտադրական կոլեկտիվների սոցիալիստական պարտավորությունների, այս կամ այն կարևորագույն իրադարձությունը բարձր արտադրական ցուցանիշներով դիմավորելու նրանց խոստման կատարումն ի չիք է դառնում միայն այն պատճառով, որ հարակից մյուս կոլեկտիվներն իրենց պարտավորությունները չեն կատարում և դրանով խափանում են նաև ուրիշների լավ նախաձեռնությունները։

Պատվիրատու ձեռնարկությունները, ժամանակին չստանալով պահանջվող նյութերը, մեքենաները կամ սարքերը, սկսում են նամակներ ու հեռագրեր ուղղել կուսակցական, սովետական և այլ մարմիններին։ Անցյալ տարի միայն ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեում ավելի քան 2.500 այդ կարգի նամակներ ու հեռագրեր են ստացվել՝ այսպիսի տագնապալից ահազանգերով. «մեր բազմաթիվ նամակներին ու հեռագրերին առաքող ձեռնարկությունները չեն պատասխանում», «արտադրությունը կանգ է առել», «ձախողվել է պլանների ու պարտավորությունների կատարումը» և այլն, և այլն։ Մեր ստուգումներով արձանագրվել են շատ փաստեր, երբ տեղերում, ստանալով նամակներ կամ հեռագրեր, ձեռնարկությունների առաքման ապարատի աշխատողները դրանք անուշադրության են մատնում և նույնիսկ չեն պատասխանում պատվիրատուներին։ Այդպիսի փաստեր արձանագրվել են Երևանի ավտոմոբիլային, ավտոբեռնիչների, ֆրեզերային հաստոցների, էլեկտրաշարժիչների, Կամոյի կաբելի, Լենինականի «Ստրոմմաշ», Սպիտակի վերելակների և շատ այլ գործարաններում։ Երևանի ավտոմոբիլային գործարանը 1981 թվականին պատվիրատուներին պակաս տվեց 815 ավտոմեքենա, իսկ ավտոբեռնիչների գործարանը՝ 125 ավտոբեռնիչ։ Պատվիրատուներն անհամբեր սպասում էին այդ մեքենաներին, գրում նամակներ, հղում հեռագրեր, բայց նշված գործարանների առաքման բաժինների աշխատողները հարկ չեն համարել անգամ պատասխանել դրանց։

Պատվիրատու ձեռնարկություններն ու կազմակերպությունները, չստանալով իրենց նամակների ու հեռագրերի պատասխանները, ստիպված գործուղում են, այսպես կոչված, «հրորդներ»՝ արտադրանքի առաքման գործը արագացնելու համար։ Ի դեպ, պետք է ասել, որ կառավարության կողմից խստիվ արգելված է նման պրակտիկան։ Բայց շատերը շրջանցում են այդ արգելքը։ Էլեկտրամեքենաշինական, էլեկտրաշարժիչների և շատ այլ գործարանների մուտքերի մոտ ամեն օր կարելի է տեսնել շատ «հրորդների», որոնք գործուղվել են Միության տարբեր վայրերից։ Երբեմն նրանք մնում են շաբաթներով, տեղիք տալով հսկայական անարտադրողական ծախսերի ու ժամանակի կորուստների։ Հազիվ թե հարկ կա նշել, որ մեր հանրապետության ձեռնարկությունները նույնպես դեռևս վերջ չեն տվել «հրորդներ» առաքելու պրակտիկային։

Արտադրանքի առաքման պլանները որոշ դեպքերում թերակատարվում են տվյալ ձեռնարկությունից անկախ պատճառներով։ Իհարկե, այս մասին պետք է տեղյակ պահել պատվիրատուներին։ Բայց արձանագրվել են նաև բազմաթիվ փաստեր, երբ առաքման պլանների ձախողման պատճառը միայն և միայն իրենց անբավարար աշխատանքն է։ Աշխատանքի վատ կազմակերպման և անպատասխանատու վերաբերմունքի հետևանք է, երբ պատվիրատուների մի մասին ոչինչ չի առաքվում, իսկ այդ նույն ժամանակ մեկ ուրիշի ուղարկվում է պահանջից ավելի քանակության արտադրանք։ 1981 թ. Լենինականի էլեկտրատեխնիկական գործարանը կույրերի համամիութենական ընկերության ձեռնարկություններին չի ուղարկել ԼՍՄ—400 մակնիշի 37.500 կոնդենսատոր, իսկ 5 այլ ձեռնարկությունների այդ նույն արտադրանքից պատվերից ավելի ուղարկել է 26.300 հատ։ Երևանի «էլեկտրաապարատ» գործարանը 1981 թ. առաջին կիսամյակում հնարավորություն է ունեցել կատարելու բոլոր պատ-

տարբերություն է ցուցաբերվում պետական կարգապահության ամրապնդման նկատմամբ։

Կարգապահության խախտումները, հարցերի լուծման ժամանակ ոչ պետական մոտեցումը, նյութական, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների անարդյունավետ օգտագործման փաստերը հաճախ համապատասխան գնահատականի չեն արժանանում տեղերում, անհրաժեշտ հասարակական կարծիք չի ստեղծվում պայմանագրային կարգապահությունը խախտողների նկատմամբ։ Այդ իմաստով անբավարար են օգտագործվում նաև հրապարակային ներգործության միջոցները, կոլեկտիվների ժողովները, արտադրական խորհրդակցությունները, մի բան, որի վրա հատուկ ուշադրություն հրավիրեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ արհմիությունների XVII համագումարում ունեցած իր ելույթում։

Պետական կարգապահության խախտման կամ տնտեսությանը նյութական վնաս պատճառելու ոչ մի դեպք չպետք է վրիպի ժողովրդական վերահսկիչների տեսադաշտից, դրանց համար մեղավոր անձինք պետք է հասարակական խիստ պարսավանքի ենթարկվեն ու պատասխանատվության կանչվեն։

Ժողովրդական վերահսկողության խմբերը պետք է լիովին օգտագործեն օրենքով վերապահված իրավունքները։ Պետական կարգապահության կամ այլ խախտումներ բացահայտելու դեպքում նրանք մեղավոր անձանց հասարակական պարսավանքի են ենթարկում, նրանց պարտավորեցնում են հանդես գալ աշխատավորական կոլեկտիվների առջև, բացատրել թույլ տրված խախտման պատճառները և նշել, թե ինչ միջոցներ են նախատեսվում հետագայում դրանց կրկնությունը բացառելու համար։

Արտադրամիավորումների, ձեռնարկությունների և այլ տնտեսությունների կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, ժողովրդական վերահսկողության խմբերը կոչված են վճռականորեն հանդես գալու այն ամենի դեմ, ինչը վնաս է հասցնում պետական շահերին, նպաստելու աշխատավորության շրջանում ողջ հասարակության գործերի համար պատասխանատվության զգացումի զարգացմանը։ Քաղաքական-մասսայական, դաստիարակչական ամբողջ աշխատանքի նպատակը պետք է լինի այն, որ արտադրության յուրաքանչյուր աշխատող զգա իրեն հանձնարարված գործի հասարակական կարևորությունը և այն կատարի ժամանակին ու բարեխղճորեն։

---






# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԷՍՏՈՆԻԱՅԻ ԾԱՂԿՈՂ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

**Ի. Ա. ԼՈՏՏ**
էստոնական ՍՍՀ-ի կուլտուրայի մինիստր

**1940** ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒԼԻՍԻՆ էստոնիայում վերականգնվեց սովետական իշխանությունը, իսկ նույն թվականի օգոստոսին էստոնական ՍՍՀ-ն մտավ ՍՍՀ Միության կազմի մեջ։ Դա մեր հանրապետության աշխատավորների առջև ռեալ հնարավորություններ բացեց տնտեսական ու կուլտուրական զարգացման համար։ Կուլտուրական հեղափոխության ընթացքում ձևավորվեց էստոնական նոր սովետական մշակույթը, որը դարձավ սովետական բազմազգ սոցիալիստական կուլտուրայի օրգանական մասը։

Վերակերտելով մշակութային կյանքը, մենք օգտվել ենք միութենական մյուս հանրապետությունների փորձից, մեծ ուշադրություն նվիրելով եղբայրական ժողովուրդների կուլտուրական արժույթներին հաղորդակցվելուն։

Կարևորագույն քայլ եղավ այն, որ մամուլը, ռադիոն և հրատարակչական գործն ի սպաս դրվեցին նոր իշխանությանը։ Օպերատիվ կերպով կազմակերպված սովետական մամուլը և ռադիոհաղորդումները հնարավորություն ընձեռեցին մեր աշխատավորներին՝ ծանոթանալու եղբայրական ժողովուրդների հոգևոր կյանքին և հաղթահարելու բուրժուական գաղափարախոսության ազդեցությունը։

Ֆաշիստական Գերմանիայի հարձակումը Սովետական Միության վրա և էստոնական ՍՍՀ-ի օկուպացիան ընդհատեցին սովետական կուլտուրական կյանքի բեղուն զարգացումը։ Պատերազմի և օկուպացիայի տարիները ծանր հետք թողեցին մեր հանրապետության էկոնոմիկայի ու մշակույթի անդաստանում։ Զավթիչների ջախջախումից հետո աշխատավորները, կուսակցության ղեկավարությամբ, անձնուրաց կերպով ձեռնամուխ եղան վերացնելու ֆաշիստների պատճառած վնասը։ Էկոնոմիկայի վերականգնման հետ մեկտեղ սկսեց աշխուժանալ նաև մշակութային կյանքը։ Կուսակցությունն ու սովետական կառավարությունն արեցին հնարավոր ամեն բան, որպեսզի անհապաղ իրենց դռները բացեն դպրոցները, բուհերը, մշակութային հաստատությունները։ Ազատագրված էստոնիայի մշակութային կյանքի զարգացման գործում հետպատերազմյան առաջին տարիներին մեծ ավանդ ներդրեցին նաև մշակույթի այն գործիչները, որոնք պատերազմի սկզբում աշխատում էին սովետական թիկունքում ստեղծված էստոնական ՍՍՀ պետական, գեղարվեստական անսամբլներում։

Մեծ են հաջողությունները և հրատարակչական գործունեության ու գրականության ոլորտում։ Ազգային սոցիալիստական մշակույթի զարգացման համար վիթխարի նշանակություն ունի գեղարվեստական գրականությունը

նում։ Խթանիչ գործոն են երիտասարդ կատարողների միջհանրապետական և համամիութենական մրցույթները։

Էստոնական ՍՍՀ-ի երաժշտական կուլտուրայի զարգացման մարզում նշանակալի է էստոնական պետական սիմֆոնիկ նվագախմբի (դիրիժոր՝ Պ. Լիլյե) և Էստոնական ՍՍՀ-ի տղամարդկանց պետական ակադեմիական երգչախմբի (գեղարվեստական ղեկավար՝ Գ. Էռնեսաքս) ծավալած գործունեությունը։ Երկու կոլեկտիվների բարձր վարպետությունը և խաղացանկի հույժ խնամքով ու գործիմաց ընտրությունը ապահովում են նրանց համերգների մշտական հաջողությունը։

Երաժշտական կուլտուրայի զարգացումը չի կարելի պատկերացնել առանց տաղանդավոր կոմպոզիտորների։ 1970-ական թվականներին էստոնական կոմպոզիտորների ընտանիքը համալրվեց մի քանի երիտասարդ տաղանդներով— Ռ. Կանգրո, Մ. Կուուլբերգ, Ա. Մյաննիկ, Ա. Պիլդմյաե, Լ. Սումերա և ուրիշներ։ Աճել է երգչախմբի համար գրող կոմպոզիտորների թիվը։ Համընդհանուր ճանաչում է գտել Վ. Տորմիսի ստեղծագործությունը— Երգի սկիզբը, à capella կանտատը, հատկապես Լենինի խոսքերը, Երկաթի անեծքը կանտատները և Մաարյամաայի բալլադը, որի համար 1974 թ. Վ. Տորմիսին շնորհվեց ՍՍՀՄ պետական մրցանակ։

Վոկալ-սիմֆոնիկ երաժշտության մեջ նկատելի է կոմպոզիտորների բուռն հետաքրքրությունը հասարակական-քաղաքական թեմատիկայով։ Հիշենք Յա. Ռյաեթսի և Է. Վետեմաայի Կարլ Մարքս օրատորիան, Յա. Կոխի Երգ կուսակցության մասին, Երգ Լենինի մասին, Երգ հայրենիքի մասին, Հավերժական կրակի մոտ, Բ. Փարսադանյանի Արծիվ, Վ. Կապպի Հյուսիսային ափ, Ռեմբրանդտ, Է. Տամբերգի Հաղթական շեփորներ, Սիրանո դը Բերժերակ, Երկաթյա տուն, Խ. Յուրիսալուի Երիտասարդական կանտատը, Ռ. Կանգրոյի Փառք ճախրողներին, Սքանչելի պատմություն, Ջոնը, Լ. Գուստերի Խաղաղության առավոտը, Լ. Սումերի Կյանքի ու մահվան մասին, Վ. Տորմիսի Կարապի թռիչքը, Վ. Օյակյաերի Արքան մրսում է ստեղծագործությունները։

Հատկապես վերջին տարիներին աշխուժացել է կոմպոզիտորների հետաքրքրությունը բալետային ժանրի նկատմամբ։

Էստոնական սովետական երաժշտական կուլտուրայի բուռն զարգացումը հնարավոր եղավ շնորհիվ այն բանի, որ Էստոնիայի ազատագրումից հետո սկսեց ձևավորվել երաժշտական կրթության համակարգը։ Երաժշտական տարրական կրթության մասին կոչված են ամենից առաջ հոգալու մանկական երաժշտական դպրոցները, որոնց բազայի վրա հաջողությամբ գործում են լարային գործիքների պատանի կատարողների հանրապետական անսամբլը և պատանի կատարողների հանրապետական փողային նվագախումբը։ Տալլինում և Տարտուում գործում են երաժշտական ուսումնարաններ, Տալլինի կոնսերվատորիային կից՝ 1961 թվականին հիմնվել է միջնակարգ երաժշտական դպրոցը։ Երաժշտական բարձրագույն կրթություն կարելի է ստանալ Տալլինի պետական կոնսերվատորիայում։ Էստոնացի մի շարք երաժիշտներ կրթություն են ստացել Մոսկվայի, Լենինգրադի կոնսերվատորիաներում կամ իրենց վարպետությունը կատարելագործել են երաժշտական այդ բարձրագույն ուսումնական հաստատությունների ասպիրանտուրաներում։

Էստոնիայում շարունակ հնչել է խմբերգը։ Սովետական իշխանության տարիներին մեր խմբերգային արվեստը՝ այդ հզոր, ըստ էության ժողովրդական կոլեկտիվ արվեստը, ստացել է նոր թափ, նոր սոցիալիստական բովանդակություն։ Գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների շարքում առաջին տեղն են գրավում երգչախմբերը։ 1981 թվականին մեզ մոտ գործում էր մոտ 300 երգչախումբ (11 հազար երգիչներով), մոտ 300 մանկական երգչախումբ (17 հազար անդամներով), տղաների 50 երգչախումբ (2.000), 25 խառը երգչախումբ հանրակրթական դպրոցներում (2.000) և այլն։ Պրոֆեսիոնալ երգչախմբերի դիրիժորների օրինակն ու անբասիր աշխատանքը ապահովում են ինքնագործ երգչախմբերի բարձր գաղափարայնությունն ու գեղարվեստական պատշաճ մակարդակը։ Մենք իրավամբ կարող ենք պարծենալ մեր երգչախմբային մշակույթով։



Հատկապես երիտասարդության շրջանում մեծ մասսայականություն են վայելում ժողովրդական պարերը։ 840 խմբերում պարում է 13 հազարից ավելի մարդ։ Անընդհատ բարձրանում է վարպետությունը ժողովրդական արվեստի այդ բնագավառում։

Վերջին տարիներս բարձրացել է հետաքրքրությունը փողային ու ժողովրդական երաժշտության նկատմամբ։ 1981 թվականին մեր հանրապետությունում կար 104 փողային նվագախումբ՝ մոտ 3.500 կատարողներով։

Ստեղծագործական մի յուրատեսակ լաբորատորիա են դարձել երգչախմբերի ղեկավարների խառը երգչախումբը, նվագախմբերի ղեկավարների փողային նվագախումբը, ժողովրդական երաժշտության անսամբլների ղեկավարների նվագախումբը և ժողովրդական պարերի ղեկավարների պարային անսամբլը։

Շրջանային և քաղաքային երգի ու պարի, ինչպես և Էստոնական ՍՍՀ հոբելյանի օրերին կազմակերպվող երգի ու պարի հանրապետական տոները ամենաանմիջական ազդեցություն են ունենում երգչախմբերի ու պարի կոլեկտիվների թվի աճի, դրանց վարպետության բարձրացման վրա։ Ազգային և ինտերնացիոնալ այդ տոնահանդեսների նախապատրաստությունը ենթադրում է նաև կոմպոզիտորների ոգևորված ստեղծարար գործունեություն։ Այդ տոները խթանում են գեղարվեստական ինքնագործ արվեստի զարգացումը, դրանք դարձել են գեղարվեստական ինքնագործունեության մասսայականության ու վարպետության դարբնոցներ։ Դրանք ունեն նաև մոբիլիզացնող դաստիարակչական ու ոգեշնչող ներգործություն։ Գրեթե 30 հազար երգիչների, պարողների, ժողովրդական գործիքների վրա կատարողների հետ միասին հանրապետական տոների անցկացմանը մասնակցում է կազմակերպչական հոծ ակտիվ։

Ակնբախ են և Սովետական Էստոնիայի նկարիչների նվաճումները։ Մոնումենտալ արվեստի բնագավառում կատարվող աշխատանքները, շենքերի ինտերիերի գեղարվեստական ձևավորումը, գործունեությունն արդյունաբերական արվեստի բնագավառում, հրատարակչություններում և թատրոններում, այս ամենը հարստացնում է մեր մշակույթը, կարևոր դեր խաղում ժողովրդի կուլտուրական վերելքի գործում։

Վերջին տարիների շատ ստեղծագործությունների գաղափարագեղարվեստական բարձր մակարդակը ճանաչում է գտել ո՛չ միայն հանրապետությունում, այլև ողջ Սովետական Միությունում։ Նման գործերից են Է. Օկասի 1940 թվականը Էստոնիայում, Է. Պյաեզուկեի Ջութակով տղան, Ն. Կորմշովի Հաղթողները նկարները։ Նշենք Ա. Կեեռենդի գրաֆիկական գործերը՝ գյուղական թեմաներով, Խ. Էէկլմի ստեղծագործությունը, Խ. Պալմի մանկական քանդակները, դիմանկարիչներ Մ. Միկոֆի, Ա. Կուլբարսի, Ա. Կաալիկի ստեղծագործությունները։

Էստոնական կինոարվեստի զարգացումը կապված է 1940 թվականի հետ, երբ մեր հանրապետությունում վերականգնվեց սովետական իշխանությունը։

Մեր հանրապետության թողարկած ֆիլմերի ծավալը շատ փոքր է՝ տարեկան ընդամենը 3—4 ֆիլմ։ Սակայն մեր կինոգործիչները ջանում են օգտագործել եղած հնարավորությունները բարձր մակարդակի լավ ֆիլմեր ստեղծելու համար։ Դեռևս 1960-ական թվականներին հանրապետությունում նկարահանված շատ ֆիլմեր արժանացել էին արդարացի դիտողությունների, բայց 1970-ական թվականների երկրորդ կեսին, 1980-ական թվականների սկզբին էկրանացված ստեղծագործություններում արդեն զգալիորեն բարձր է գաղափարագեղարվեստական մակարդակը։ Դրա վկայություններից է նաև կինոհանդիսատեսների թվի աճը։ Մեր ֆիլմերն սկսեցին ավելի հաճախ ցուցադրվել միջազգային կինոփառատոներում։ Տասներորդ հնգամյակում Էստոնական ՍՍՀ ֆիլմերի հեղինակները համամիութենական և միջազգային կինոփառատոներում ստացել են մոտ 50 մրցանակ ու դիպլոմ՝ ավելի շատ, քան նախորդ 30 տարիներում։

Անդուլ հոգալով կուլտուրական ու գեղարվեստական արժույթների ստեղծման ու բազմապատկման մասին՝ ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը հույժ կարևորում են այն էական հանգամանքը, որ ստեղծվող գործերը նպաստեն

սովետական մարդկանց կուլտուրական մակարդակի աճին, ծառայեն նրանց բարոյագեղագիտական դաստիարակությանը: Էստոնիայի կոմկուսի Կենտկոմը և Էստոնական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը բազմիցս քննարկել են ստեղծագործական միությունների և մշակութային հաստատությունների գործունեությունը, մշտական ուշադրության կենտրոնում են պահել գրականության, երաժշտության, կինո և թատերական արվեստի, կերպարվեստի հետագա զարգացման խնդիրները:

1979 թվականին Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի XV պլենումում քննարկվեց «Գաղափարախոսական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Վայնոն իր ճառում մատնանշեց սովետական մարդուն գաղափարական համոզմունքներով համակելու, վեհ գաղափարական, գեղարվեստագեղագիտական երկեր ստեղծելու, մշակութային հիմնարկությունների աշխատանքը զգալիորեն բարելավելու անհրաժեշտությունը: Այդ իսկ նպատակով ստեղծագործական միություններում և մշակույթի հիմնարկություններում կազմվեցին կոնկրետ պլաններ:

ՍՄԿԿ XXVI համագումարը մի անգամ ևս ուշադրություն հրավիրեց գաղափարազրկության և աշխարհայացքային ապակողմնորոշման դրսևորումների վրա: «Կուսակցությունն անտարբեր չի եղել և չի կարող լինել մեր արվեստի գաղափարական ուղղվածության նկատմամբ», շեշտեց Լ. Ի. Բրեժնևը (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 102):

Մեր հանրապետությունում ևս կարևոր տեղ է գրավում ստեղծագործական մտավորականության մշակույթի աշխատողների գաղափարական, մարքս-լենինյան դաստիարակությունը, նրանց ներգրավումը հասարակական կյանքի ոլորտը, նրանց կերպավորումը որպես կոմունիզմի ակտիվ կառուցողներ:

Երաժշտության, դրամայի, կերպարվեստի զարգացման նպատակով վերջին տարիներս կազմակերպվել են զանազան մրցույթներ ու նպատակային հայտեր: Մրցույթների շնորհիվ ծնունդ առան բավական հասուն ստեղծագործություններ, երևան եկան տաղանդավոր կատարողներ, գրողներ, դերասաններ, նկարիչներ:

Սովետական կուլտուրայի և արվեստի արժույթներին հաղորդակից դարձնելու գործում մեծ դեր են խաղում մշակույթի տներն ու ակումբները, գրադարաններն ու թանգարանները: Մշակույթի տներում և ակումբներում գործող գեղարվեստական ինքնագործունեության խմբակները հարյուրավոր ու հազարավոր մարդկանց հնարավորություն են ընձեռում մասնակցելու կուլտուրական արժույթների ստեղծմանը: Չէ՞ որ սոցիալիստական կուլտուրայի խնդիրն է նաև կերպավորել այնպիսի մարդ, որը ո՛չ միայն սպառում է կուլտուրական արժույթները, այլև ինքն է ակտիվ մասնակցում դրանց ստեղծմանը. «Սոցիալիզմը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— աշխատավոր զանգվածների առջև ո՛չ միայն լայնորեն բաց արեց հոգևոր արժույթների դռները, այլև նրանց դարձրեց կուլտուրայի անմիջական կերտողներ: Սրա վառ վկայություններից մեկը գեղարվեստական ժողովրդական ստեղծագործության անօրինակ թափն է» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 398):

Մարքսիզմ-լենինիզմի գաղափարների և կուսակցության քաղաքականության պրոպագանդման, ՍՄԿԿ համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների կատարման համար աշխատավորների մոբիլիզացման, սովետական ապրելակերպի պրոպագանդման ու կատարելագործման, աշխատավորների սոցիալ-քաղաքական ակտիվության բարձրացման կարևոր օջախներից են ակումբները:

Ղեկավարվելով կուսակցության ցուցումներով՝ մեր արհմիութենական և մշակութային մարմինները միջոցներ են ձեռնարկել ավելի բարձրացնելու ակումբային հիմնարկությունների դերը հասարակական-քաղաքական կյանքում, աշխատավորների բովանդակալից ժամանցը կազմակերպելու գործում: Դրա շնորհիվ ակումբային հիմնարկությունների գործունեությունը տասներորդ հնգամյակում դարձել էր ավելի նպատակամետ, աշխատանքի ձևերն ու մեթոդները՝ ավելի բազմազան ու ընդգրկուն: Հնգամյակի ընթացքում գեղար-



վեստական ինքնագործունեության մասնակիցների թիվն ավելացել է մոտ 10.000 մարդով: 1981 թվականին Էստոնական ՍՍՀ-ում կային գեղարվեստական ինքնագործունեության 10.000-ից ավելի կոլեկտիվներ, սիրողների միավորումներ և այլ խմբակներ: Ինքնագործ կոլեկտիվների ուժերով կազմակերպվում են համերգներ ու ներկայացումներ: 1980 թվականին միայն ակումբներին կից գործող խմբակները տվել են մոտ 11.000 համերգ ու ներկայացում, որոնք դիտել են 2.690 հազար մարդ: Ակումբները կազմակերպում են դասախոսությունների, հարց ու պատասխանի երեկոներ, հանդիպումներ աշխատանքի ու հեղափոխության վետերանների, կուսակցական, սովետական ու կոմերիտական աշխատողների հետ, արտադրության առաջավորների մեծարման երեկոներ, անվանի կոլեկտիվների ու արվեստի վարպետների ելույթներ:

Մեզ մոտ ստեղծված են բոլոր պայմանները մարդկանց գեղարվեստական ընդունակությունների ու ստեղծագործական հակումների դրսևորման համար: Պետք է խոստովանել, որ բնակչության որոշ խավեր, օրինակ, բանվորները, երիտասարդությունը, գյուղատնտեսության աշխատողները դեռ բավարար չափով ընդգրկված չեն գեղարվեստական ինքնագործունեության ոլորտը: Այդ բանին պետք է հատուկ ուշադրություն նվիրեն այն ձեռնարկություններն ու տնտեսությունները, որոնք ունեն ժամանակի պահանջներին համապատասխանող ակումբային շենքեր: Կենսական է մնում սովորող և աշխատող երիտասարդությանը գեղարվեստական ինքնագործունեության ոլորտը ներգրավելու հարցը:

Ո՛չ միայն ստանալ, այլև մեր ավանդը ներդնել Սովետական Միության և աշխարհի մշակույթի գանձարանը: Այս է մեր գործունեության ելակետը մշակույթի զարգացման ասպարեզում: Էստոնական ՍՍՀ ստեղծագործական միությունները, հանրապետության կուլտուրայի մինիստրությունը, մամուլի, կինեմատոգրաֆիայի, հեռուստատեսության և ռադիոհաղորդումների կոմիտեները հետևողական աշխատանք են ծավալում, որպեսզի Էստոնական ՍՍՀ բնակիչների համար մատչելի դարձնեն եղբայրական ժողովուրդների կուլտուրական արժույթները և իրենց հերթին եղբայրական հանրապետությունների բնակիչներին ծանոթացնեն կուլտուրայի բնագավառում էստոն ժողովրդի հասումներին:

Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մեր երկրում զարգացել ու ամրապնդվել է նոր, սովետական կուլտուրան, որը միավորում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների կենցաղի ու ավանդույթների առավել նշանակալի հատկանիշները:

Սոցիալիստական հասարակության կուլտուրայի մեջ անխզելի են ազգային և ինտերնացիոնալ հիմքերը, ուստի կուլտուրայի զարգացման մակարդակի հետագա բարձրացումը մեր հասարակության մեջ ենթադրում է ինչպես ազգային, նույնպես և ինտերնացիոնալ տարրերի խելացի օգտագործում:

Կոմունիստական կուսակցությունը շատ կարևոր երևույթ է համարում մեր երկրի ազգային մշակույթների հետագա ծաղկումը և ուղղություն է տալիս մշակույթների մերձեցման ու փոխհարստացման օբյեկտիվ միտումին: ՍՄԿԿ XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Կյանքը համոզում է, որ մեր հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական ինտենսիվ զարգացումն արագացնում է դրանց բազմակողմանի մերձեցման պրոցեսը: Տեղի է ունենում ազգային կուլտուրաների ծաղկում ու փոխհարստացում, սոցիալական և ինտերնացիոնալ նոր հանրության, միասնական սովետական ժողովրդի կուլտուրայի ձևավորում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 92):

Սովետական Էստոնիայի ազգային կուլտուրան ուժեր է քաղում եղբայրական ժողովուրդների հոգևոր հարստություններից և իր հերթին բարերար ազդեցությամբ հարստացնում դրանք: Էստոնացի ընթերցողներին մատչելի են դարձել սովետական ժողովուրդների գրականությունների լավագույն ստեղծագործությունները, ինչպես նաև համաշխարհային դասական գրականությունը: 1940—1980 թթ. հրատարակվել է 55 հազար անուն գիրք՝ ավելի քան 285 միլիոն օրինակ ընդհանուր տպաքանակով: Սովետական իշխանության տարի-

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ԲՆՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

**Վ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ կենսաբանական գիտությունների
բաժանմունքի ակադեմիկոս քարտուղար,
ՀՍՍՀ ԳԱ իսկական անդամ

ԲՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՆՆԱԽԸՆԹԱՑ վերելքի շնոր-
հիվ աստիճանաբար ձևավորվում և ուժեղանում է դրանց
ազդեցությունը արտադրության առաջընթացի վրա։ Այդ կապը նախ և առաջ
դրսևորվում է բնական ռեսուրսները լայն մասշտաբներով օգտագործելու մեջ,
նպատակ ունենալով բավարարել հասարակության նյութական ու հոգևոր պա-
հանջմունքները։ Այս եղանակով էլ գիտությունը քայլ առ քայլ ամրապնդում
և ընդլայնում է իր բազմակողմանի ազդեցության ոլորտը, աստիճանաբար վե-
րածվելով հասարակական արտադրության զարգացման գլխավոր գործոնի։
Մյուս կողմից էլ տեխնիկայի առաջընթացն իր հզորագույն ազդեցությունն
է թողնում գիտության, կամ այլ կերպ ասած՝ նյութական արտադրության զար-
գացման տեսական ու գործնական հիմունքների վրա։ Ֆ. Էնգելսը նկատել է, որ
«Եթե հասարակության մոտ երևան է գալիս տեխնիկական պահանջ, ապա այն
գիտությանն առաջ է մղում ավելի շատ, քան տասնյակ համալսարաններ»
(К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 39, стр. 174)։ Այս իմաստով դրույթի
մեջ ակնառու դրսևորվում է գիտության ու արտադրության, գիտության ու
տեխնիկայի անխախտ կապի և պայմանավորվածության գաղափարը, որն
ամենայն իրավամբ հասարակական նյութական ուժերի զարգացման հիմնա-
կան օրենքներից մեկն է։

Մարդն իր կարիքների բավարարման համար շռայլաբար և աճող տեմպե-
րով օգտագործում է միլիոնավոր տարիների ընթացքում էվոլյուցիոն ճանա-
պարհով ստեղծված և փոխադարձորեն պայմանավորված կենսոլորտի բա-
ղադրիչ մասերը և այդպիսով ազդում նրա վրա, փոխում երկրի կերպարը, նրա
բուսական ու կենդանական աշխարհը, ջրային ռեսուրսների քանակն ու որակը,
մթնոլորտի բաղադրությունը, խախտում բնության կենսաբանական հավասա-
րակշռությունը, առանց կանխատեսելու այն բացասական հետևանքները, որոնք
տեղի են ունենում կենսոլորտում և վնաս պատճառում ողջ հասարակության
նյութական ու հոգևոր կուլտուրայի հետագա զարգացմանը։ Ֆ. Էնգելսը խոսա-
լով այդպիսի անդառնալի հետևանքների, արդյունաբերական վնասի, նման վիճակի ստեղծման հնարավորության մասին,
գույնս նախազգուշացրել է նման վիճակի ստեղծման հնարավորության մասին,
ասելով. «Չպետք է, սակայն, շատ հրապուրվել բնության վրա տարած մեր
հաղթանակներով։ Ամեն մի այդպիսի հաղթանակի համար բնությունը մեզնից
վրեժ է առնում» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 20, стр. 495)։ Եվ, իրոք,
նույնիսկ հասարակության զարգացման վաղ փուլերում մարդու տարերային
գործունեությամբ կենսոլորտում տեղի են ունեցել այնպիսի անդառնալի փո-
փոխություններ, որոնք մինչև օրս էլ անհանգստացնում են ամենքիս։

Գյուղատնտեսության զարգացումը և մշակովի տարածությունների ընդ-



լայնումը մի կողմից, բնափայտի արտադրության պահանջների բազմապատ-
կումը մյուս կողմից, տեղիք են տվել ամենաարդյունավետ ու թանկարժեք ան-
տառների մասսայական ոչնչացման, առաջին հերթին՝ բարենպաստ հարթա-
վայրային շրջաններում։ Այս առումով բավական է հիշատակել Միջերկրական
ծովի ավազանի և այլ մարզերի անտառների համատարած հատումը և կենսո-
լորտի վատթարացումը։ Նման բարբարոսական ոչնչացման են ենթարկվել նաև
Հյուսիսային Ամերիկայի և Կանադայի անտառները։ Երկրի տարբեր մասերում
գտնվող անտառների անխնամ համատարած ոչնչացման, ինչպես և արոտա-
վայրերի ինտենսիվ ու անսիստեմ օգտագործման հետևանքով առաջացել են
անապատային վիթխարի զանգվածներ, որտեղ այժմ տիրում են օրգանական
աշխարհի գոյությանն սպառնացող կլիմայական դաժան պայմանները։

Աֆրիկայի, Հարավային Ասիայի, Հյուսիսային Ամերիկայի շատ մարզերում
մարդու կողմից բնության հանդեպ նման վերաբերմունքը հանգեցրել է այն բա-
նին, որ այժմ նշված մայրցամաքների մի շարք զարգացող երկրներում կեն-
սամթերքների, կերի, ջրի և այլ անհրաժեշտ նյութական բարիքների արտա-
դրությունը դարձել է դժվարալուծելի խնդիրներից մեկը։

Անտառների անխնա ոչնչացման հետևանքով էրոզիայի են ենթարկվել
հսկայական հողազանգվածներ, հողմահարվել, լվացվել են միլիոնավոր տա-
րիների ընթացքում ստեղծված բերրի հողատարածությունները։

Հողերի արտահայտված էրոզիայի օջախներից է Հայաստանը։ Համամիու-
թենական հողնախագիծ ինստիտուտի տվյալներով հանրապետության հողային
զանգվածների մեկ-երրորդը ենթարկված է ուժեղ կամ թույլ էրոզիայի։ Նման
անբարենպաստ վիճակ է տիրում նաև անտառային տնտեսության բնագավա-
ռում։ Հանրապետության տարածքը, որը բնորոշվում է տիպիկ լեռնային ռելիե-
ֆով, կոնտինենտալ և անբարենպաստ կլիմայով, գյուղատնտեսական կուլտու-
րաների ցածր բերքատվությամբ, ջրային սուղ ռեսուրսներով, ծայրահեղ աղ-
քատ է անտառներից։ Նման կլիմա և ռելիեֆ ունեցող երկրներում բարենպաստ
կենսոլորտի առկայությունը պայմանավորվում է առավելապես անտառազանգ-
վածներով, որոնց տարածությունը պետք է գերակշռի մյուս բուսական ֆոր-
մացիաներին։

Երկրի մակերեսին անտառապատ տարածությունների պրոգրեսիվ նվազ-
ման հետևանքով աշխարհում անհետացել են կենդանիների և բույսերի շատ
տեսակներ։ Մոտավոր տվյալներով բնության վրա անուղղակի ազդեցության
հետևանքով երկրի երեսից անհետացել են 120-ից ավելի կաթնասուններ, ավելի
քան 150 տեսակ թռչուններ, հազարավոր անողնաշարավոր կենդանիների և
բույսերի տեսակներ։ Կենդանական ու բուսական շատ տեսակներ այժմ գտն-
վում են անհետացման եզրին։

Գիտատեխնիկական առաջընթացն իր չվերականգնվող ազդեցությունն է թողել
նաև ընդերքի հարստությունների վրա։ Միայն XIX դարում երկրի ընդերքից
կորզվել է 22.711 հազար տոննա արճիճ, 11.373 հազար տոննա ցինկ, 10.679
հազար տոննա արծաթ, 11,5 հազար տոննա ոսկի, 27,5 հազար տոննա ալյու-
մին։ Այժմ ամեն տարի երկրի ընդերքից հանվում են ավելի քան 4 խկմ հան-
քային ապարներ, որոնց պարունակած բազմազան հումքի տեսակները մշակ-
վում են տասնյակ հազարավոր գործարաններում և որոնք երկրի մթնոլորտը,
ջրային զանգվածներն ու ցամաքը անընդհատ աղտոտում են արդյունաբերա-
կան մնացուկներով, դրանով իսկ թուլացնելով կենսոլորտի ինքնամաքրման
ունակությունը։ Եթե նման տեմպերով շարունակվի կենսոլորտի աղտոտումը,
ապա կես դար անց հազիվ թե հնարավոր լինի ջրային ռեսուրսներով բավարա-
րել հասարակության հարաճուն պահանջները, մանավանդ եթե նկատի առնվի
նաև մարդկության քանակական պրոգրեսիվ աճը։

Երկրի վրա կյանքի գոյության հիմնական գործոններից, կենդանի օրգա-
նիզմի հիմնական բաղադրիչ մասերից մեկը ջուրն է, որի առկայությամբ իրա-
կանացվում են բջիջներում տեղի ունեցող բոլոր բիոքիմիական ռեակցիաները։
Բույսերի մեջ օրգանական նյութի սինթեզը բացառապես պայմանավորված է
ջրով։ Ֆոտոսինթեզի պրոցեսն սկսվում է նրանից, որ քլորոֆիլի մասնակցու-
թյամբ արևի էներգիայի օգնությամբ ջուրը տարրալուծվում է ջրածնի և թթ-

վածնի։ Բուսական օրգանիզմներում յուրաքանչյուր կիլոգրամ օրգանական նյութ սինթեզելու համար ծախսվում է մինչև 900 և ավելի լիտր ջուր։ Ջրի հանդեպ նման պահանջներ ունեն նաև ժամանակակից արդյունաբերական ձեռնարկությունները, որոնց մեծ մասը մեկ տոննա արտադրանք թողարկելու համար ծախսում է հազարավոր տոննա մաքուր ջուր։ Մոտավոր հաշվումներով օրվա ընթացքում արդյունաբերության մեջ օգտագործվում է մինչև 8 միլիարդ տոննա ջուր։ Ջրի հանդեպ ամենամեծ պահանջները ներկայացնում են մարդիկ իրենց նորմալ կենցաղի և ժամանակակից գյուղատնտեսական 230 և ավելի միլիոն հա հողատարածությունների ոռոգման համար։ Բավական է նշել, որ յուրաքանչյուր մարդու օրվա սննդամթերքների ստացման համար ծախսվում է 6 խմ ջուր։

Եթե գյուղատնտեսության մեջ օգտագործվող ջուրն ամբողջովին կլանվում է բույսի, հողի և մթնոլորտի կողմից, ապա արդյունաբերական և կոմունալ ջրերը հիմնականում մնում են երկրի մակերևույթին, պահպանելով կրկնօգտագործման իրենց հնարավորությունը՝ մաքրումից հետո։ Սակայն այս դեպքում յուրաքանչյուր լիտր կեղտաջրի կենսաբանական մաքրման համար պահանջվում է այն նոսրացնել մինչև 200 անգամ։ Դժվար չէ պատկերացնել, թե որքան մաքուր ջուր է պետք 150 խկմ արդյունաբերական և կենցաղային կեղտաջրերի մաքրման համար, որն ամեն տարի դուրս է մղվում մեր մոլորակի բնակավայրերից և արդյունաբերական ձեռնարկություններից։

Չնայած երկրի մակերևույթի 70 տոկոսը ծածկված է ջրով (որի ընդհանուր զանգվածը հաշվվում է 1387,5 միլիոն խկմ), սակայն հասարակության ջրապահովման հարցը ամենաանհանգստացնող պրոբլեմներից է։ Բանն այն է, որ մարդն իր կարիքները բավարարում է միայն գետերի, քաղցրահամ լճերի և մասամբ էլ ստորերկրյա ջրերով, որոնց ընդհանուր քանակը չի գերազանցում 45 հազար խկմ-ից։ Այդ պաշարը ամենամյա վերականգնվող ջուր է և, ի տարբերություն ծովերի ու օվկիանոսների ջրերի, մատչելի է մարդուն։ Ենթադրվում է, որ հաջորդ հարյուրամյակում ջրի այդ պաշարը լրիվ կսպառվի։ Ուստի և հասկանալի է այն տագնապը, որ ցուցաբերում է հասարակությունը ջրի համար։

Նկատի ունենալով գիտատեխնիկական առաջընթացի արդի և ապագա տեմպերը և երկրի վրա ջրային ռեսուրսների սահմանափակությունը, կենսական անհրաժեշտություն է դառնում հոսող (նաև օվկիանոսային) ջրերի մաքրման ու կրկնօգտագործման պրոբլեմը, որի լուծումը կապված է առաջին հերթին դրանց մեջ եղած որոշակի վնասակար նյութերի և ախտածին միկրոօրգանիզմների հեռացման հետ։

Ջրային ռեսուրսների պահպանման կարևոր հարցերից մեկն էլ փոքր գետերի մաքրության ապահովումն է։ Դրանք մաքուր ջրով ապահովում են քաղաքները, ավանները, արդյունաբերական ձեռնարկությունները և ոռոգում մշակվող հողատարածությունները։ Միայն Ուկրաինական ՍՍՀ-ում այդ գետերը ոռոգելի ջրով ապահովում են ավելի քան 600 հազար հա հողատարածություն և հարյուր հազար հա արոտավայրեր։ Իսկ դրանց օգնությամբ բանող միջկոլտնտեսային էլեկտրակայանները տարեկան տալիս են 300 և ավելի միլիոն կվտ-ժամ էլեկտրաէներգիա։

Կարևորագույն նշանակություն ունի նաև օվկիանոսների, ծովերի ու խոշոր գետերի պահպանությունը, որոնք կանոնավորում են մեր մոլորակի ջերմային և ապահովում հիդրոլոգիական ռեժիմը, ազդում կլիմայի վրա, մթնոլորտը հարստացնում թթվածնով... Դրանց մեղմ կլիմա ունեցող ափերին ձգված են սանատորիաներ, հանգստյան տներ, կեմպինգներ և հանգստի այլ հարմարություններ։ Ջրային այդ անծայրածիր զանգվածները միաժամանակ հասարակության կարևորագույն սննդի աղբյուրներ են։ Միայն 1975 թ. ձկների որսը կազմել է 70 միլիոն տոննա, իսկ այժմ այն հասել է 90 միլիոնի։

Օվկիանոսի ջրերը պարունակում են այն բոլոր նյութերը, որոնք այժմ հայթայթվում են ստորգետնյա հանքային պաշարներից։ Ջրերի մեջ լուծված օգտակար արդյունաբերական հումքի կորզման առաջին քայլերն սկսել է բնական ռեսուրսներից աղքատ Ճապոնիան։ Արդեն գործում են ուրանի ստացման



սարքերը, պլանավորվում է 1990 թ. այդ եղանակով նրա ելքը հասցնել 2.250 տոննայի, որը կկազմի երկրի պահանջի 15 տոկոսը։

Խոշոր գետերը, ծովերը և օվկիանոսները միաժամանակ դարձել են արդյունաբերական և կենցաղային կեղտաջրերի ու մնացորդների վերջնական շտեմարան։ Մոտավոր հաշվարկներով Խաղաղ և Ատլանտյան օվկիանոսներն են լցվում տարեկան ավելի քան 40 միլիոն տոննա տարբեր թափոններ, չհաշված կեղտաջրերի մեջ եղած նյութերը, որոնք համեմատաբար շատ ավելին են։ Ջրային զանգվածներին մեծ վնաս են պատճառում նավթը և նավթամթերքները, որոնց մուտքը օվկիանոս տարեկան կազմում է 10 միլիոն տոննա։ Միայն Նորվեգական ափերում արդյունահանվող հորանցքից 7 օրվա ընթացքում Հյուսիսային օվկիանոսն է թափվել 25 հազար տոննա նավթ, ծածկելով ավելի քան 400 քկմ տարածություն։ Ջրի մակերևույթը ծածկող նավթի բարակ շերտը մեծ վնաս է հասցնում դրանում իրականացվող կենսական բոլոր պրոցեսներին, խախտելով միլիոնավոր տարիների ընթացքում ստեղծված կենսաբանական հավասարակշռությունը, ինչպես և մթնոլորտի թթվածնի հաշվեկշիռը։

Ջրային կենդանական ու բուսական աշխարհին մշտապես վնասում են նաև քիմիական արդյունաբերության թափոնները, որոնք պարունակում են ծանր մետաղներ, պեստիցիդներ և թունավոր այլ նյութեր։ Ճապոնական Կյուսյու կղզու քիմիական կոմբինատներից մեկը տարիներ շարունակ օվկիանոս է թափում արճճով հագեցած կեղտաջրեր, որոնք թունավորել են այդ գոտում գտնվող ձկներին, որը հետագայում տեղիք է տվել բնակչության մասսայական թունավորման։

Համաշխարհային օվկիանոսի աղտոտման պրոբլեմն այժմ բոլոր երկրների կարևոր մտահոգություններից է։ Ահա ինչու ստեղծվել է այսպես կոչված միջազգային ծովային կոնսուլտատիվ կազմակերպություն, որի խնդիրն է հսկել ծովերը աղտոտումից կանխելու միջազգային համաձայնագրի կատարմանը և, չնայած դրան, օվկիանոսի ջրերը շարունակում են աղտոտվել նույն տեմպերով։

Մեր երկրի համար առանձնակի նշանակություն ունի նաև Ազովի և Կասպից ծովերի պահպանությունը, որոնց ափերին ամեն տարի իրենց առողջությունն են վերականգնում միլիոնավոր աշխատավորներ։

Ժամանակակից հասարակության զարգացման միտումի բնորոշ կողմերից մեկը մարդկանց կենտրոնացումն է մեծ քաղաքներում և մանր բնակավայրերի աստիճանական վերափոխումը արդյունաբերական խոշոր կենտրոնների, դրանց բնակչության հետագա աննախընթաց աճը։ Ուրբանիզացիան դժվարալույծ պրոբլեմներ է առաջադրում հասարակությանը ոչ միայն քաղաքների բնակչությանը սննդամթերքներով ապահովելու, այլև մարդկանց թթվածնով հարուստ և թունավոր գազերից զերծ օդով բավարարելու, սակավաղմուկ միջավայր ստեղծելու առումով։ Քաղաքների մշտական օբյեկտներ են խոշոր և մանր արդյունաբերական ձեռնարկությունները, ավտոտրանսպորտի միջոցները, ջեռուցման սիստեմներն ու ջերմաէլեկտրակայանները, որոնք հարաճուն մաշտաբներով մթնոլորտ են արտանետում վնասակար գազեր ու փոշիացած նյութեր։ Մոտավոր հաշվումներով ամեն տարի մթնոլորտ է արտանետվում 200 միլիոն տոննա ածխածնի օքսիդ, 40 միլիոն տոննա ածխաթթու գազ, 20 միլիոն տոննա ազոտի օքսիդներ և այլն, այն էլ հիմնականում խոշոր բնակավայրերից։ Աշխարհի մեծագույն քաղաքներից մեկի՝ Տոկիոյի փողոցներում վնասակար գազերով օդի հագեցվածությունը հասցրել է նրան, որ քաղաքի կենտրոնական փողոցների երթևեկությունը կանոնավորող անձնակազմը կրում է թթվածնային դիմակներ և նույնիսկ հերթափոխում է յուրաքանչյուր երկու ժամը մեկ անգամ։ Եվ այս աղտոտման աղբյուրի բաժինը ավտոտրանսպորտինն է։ Վերջինս օդ է արտամղում 200-ից ավելի վնասակար նյութերի խառնուրդ. արդյունաբերական ձեռնարկությունների թունավոր գազերի հետ մեկտեղ մառախլապատ եղանակներին այն առաջացնում է սմոգ, որը շատ ծանր ազդեցություն է թողնում մարդկանց առողջության վրա։ Հիշենք, որ Լոնդոնի 1952 թ. սմոգը 3—4 օրվա ընթացքում քաղաքից խլեց 4 հազար մարդկային կյանք։

Վնասակար գազերի խառնուրդը հաճախ առաջացնում է նաև այսպես կոչված ֆոտոքիմիական սմոգ։ Վերջինս գոյանում է մթնոլորտի ոչ բարձր շերտե-

րում, արևի անդրամանիշակագույն ճառագայթների ազդեցությամբ։ Այն պարունակում է մի շարք թունավոր գազեր՝ օզոն, օրգանական գերօքսիդներ, նիտրատներ, նիտրիտներ, ֆենոլներ, մեթանոլ, ալդեհիդներ և այլն, որոնք կորստաբեր ազդեցություն են թողնում ո՛չ միայն մարդկանց կամ ընտանի կենդանիների վրա, այլև մեծ վնաս են պատճառում կանաչ տնկարկներին, քաղաքային հուշարձաններին ու ճարտարապետական օբյեկտներին, նույնիսկ մետաղներին։

Ինչպես տեսնում ենք, քաղաքային բնակչության առաջին թշնամին աղտոտված, թունավորված օդն է, որի մաքրության պահպանման համար պետք է կազմակերպել գործնական պայքար։ Այդ նպատակով ամենից առաջ պահանջվում է ավտոտրանսպորտի և ավտոմայրուղիների արմատական վերափոխում։ Վերջին տարիներս լայն աշխատանքներ են ծավալվում մեքենաներից արտամղվող գազերի չեզոքացուցիչներ մշակելու համար։ Արդեն ստեղծված են համապատասխան ապարատներ, որոնք վնասազերծում են արտամղվող գազերը, և սպասելիք արդյունքները խոստումնալից են։ Միաժամանակ ինտենսիվ աշխատանքներ են ծավալվել ներքին այրման շարժիչների կատարելագործման ասպարեզում, նպատակ ունենալով ամենից առաջ նվազեցնել արտամղվող գազերի թունավոր պարունակությունները։ Այս առումով ամենանպատակահարմար քաղաքային տրանսպորտը կարող է լինել էլեկտրամոբիլը, որի տարբերակներն այժմ փորձարկվում են աշխարհի տարբեր քաղաքներում։ Ենթադրվում է, որ մոտ ապագայում այդպիսի մեքենաները կդառնան քաղաքային տրանսպորտի հիմնական միջոցները։

Բնակավայրերի օդի մաքրության հիմնական միջոցներից են անթափոն արդյունաբերական ձեռնարկությունների, ինչպես և եղած օբյեկտների համար գազամաքրիչ սարքերի ստեղծումը, դրանց անխափան գործարկումը։ Նման արդյունաբերությունն ամենից առաջ ուտիլիզացնում և օգտագործելի է դարձնում ժողովրդական տնտեսության համար կարևոր մեծ քանակությամբ արժեքավոր նյութեր, որոնք այժմ աղտոտում են մթնոլորտը։

Բնության պահպանության և դրա ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ընդհանուր համակարգում կարևորագույն նշանակություն է ստանում նաև հողի պահպանությունը, դրա բերրիության բարձրացումը։ Բուսական աշխարհի գոյության և զարգացման կարևորագույն գործոններից է հողը, որի գոյացման ու բերրիության բարձրացման խնդրում մեծագույն դեր է խաղում ինքը՝ բուսական ծածկոցը։ Վերջինս հողը հարստացնում է բազմազան օրգանական նյութերով, որոնք քայքայվելով, կենդանիների, միկրոօրգանիզմների, սնկերի, ինչպես և քիմիական նյութերի օգնությամբ առաջացնում են հումուս։ Այս պրոցեսն հատկապես ինտենսիվ է կատարվում անտառային ցենոզներում, ուր ամեն տարի մեկ հեկտար հողի վրա թափվում են մինչև 200—250 ցենտներ բուսական մնացորդներ։

Հողագոյացման պրոցեսը կապված է նաև հողում գտնվող 2 խումբ օրգանիզմների գործունեության հետ։ Մի խումբը սնվում է կենդանի օրգանիզմներով ու բույսերի հյուսվածքներով և ստացել է բիոֆագեր անունը, մյուսը՝ մեռած օրգանական միացություններով և կոչվում է սապրոֆիտ։ Մեկ հեկտար հողազանգվածում լինում են մի քանի միլիոն կենդանիներ, որոնց մեծ մասը՝ անձրևաորդերը իրենց ճանապարհին հանդիպած բոլոր նյութերն անց են կացնում աղեստամոքսային տրակտով, մի քանի տարում վերափոխելով հողազանգվածը և բարձրացնելով դրա բերրիությունը։ Հողն առավել հարուստ է տարբեր միկրոօրգանիզմներով, որոնք սնվելով օրգանական նյութերի մնացորդներով, դրանք վեր են ածում բույսերի համար մատչելի պարզ միացությունների։ Գոյություն ունի նաև միկրոօրգանիզմների մի այլ օգտակար խումբ, որը կլանում է օդի մոլեկուլյար ազոտը, վերափոխում, դարձնելով այն բույսերի համար մատչելի։ Այդ ազոտ ֆիքսող միկրոօրգանիզմները բարենպաստ պայմաններում, մեկ վեգետացիոն շրջանում կարող են մեկ հեկտար հողը հարստացնել մոտ 300 կգ ազոտով։ Դրանց մեծ մասն ապրում է թիթեռնածաղկավոր բույսերի արմատների վրա և ցուցաբերում մոլեկուլյար ազոտ ֆիքսելու ավելի մեծ ակտիվություն։ Այժմ հետազոտական աշխատանքներ են տարվում



այդ միկրոօրգանիզմները ժառանգապես փոխելու, որպեսզի դրանք ազատ բնակվեն նաև գյուղատնտեսական այլ կուլտուրաների արմատների վրա։ Այդ կնպաստի լուծելու մի կողմից հողի ազոտային պարարտացման պրոբլեմը, մյուս կողմից՝ բարձրացնելու հողի պոտենցիալ բերքատվությունը։

Գիտատեխնիկական առաջընթացի արդի ժամանակաշրջանում, երկրի հողածածկույթի վրա հզոր ազդեցություն է թողնում մարդը։ Նրա գործունեության շնորհիվ այժմ օգտագործվում է երկրի կուսական լանդշաֆտի ավելի քան 55 տոկոսը։

Հողածածկույթի վրա մարդու ազդեցությունը, ցավոք, միշտ չէ, որ ունեցել է դրական արդյունք։ Ամենից առաջ տեղի է ունեցել հսկայական հողազանգվածների այսպես կոչված արդիացում՝ դրանց ջրակլանողունակության և խոնավապահպանունակության աստիճանական նվազում, որի հետևանքով պակասել են այդ հողերի բերրիությունն ու արդյունավետությունը։ Նշված անցանկալի երևույթը մեծ դժվարություններ է հարուցել Աֆրիկայի, Հարավարևելյան և Հարավային Ասիայի, Հարավային Ամերիկայի մի շարք զարգացող երկրների՝ սննդամթերքների և անասնակերի արտադրության, բնակչությանը ջրով ու վառելիքով ապահովելու առումով։

Սովետական Միությունում արդիացման միտում է նկատվում հարավի և հարավ-արևելյան մարզերում, որն անցանկալի ազդեցություն է թողել Կասպից և Սև ծովերի ավազանների գետերի ջրային ելքի վրա։

Հողերի ոչ ճիշտ օգտագործման հետևանքով խախտվում է դրանց մեջ ֆիզիկաքիմիական և բիոլոգիական պրոցեսների նորմալ ընթացքը, թուլանում են նրա ջրակլանողականության և ջրապահունակության կարևորագույն հատկությունն ու կառուցվածքը, տեղիք տալով էրոզիայի։ Քամու էրոզիայի (դեֆլյացիայի) ժամանակ հողից պոկվում և օդ են ցնդում նրա ամենափոքրիկ մասնիկները, որոնք հարուստ են բույսերի համար ամենաարժեքավոր տարրերով։ Մոտավոր հաշվումներով ամեն տարի մեր մոլորակի հողազանգվածներից 500 միլիոն տոննա փոշի է տեղափոխվում։ Միացյալ Նահանգների մեծ հարթավայրերից 1943 թ. փոթորիկների ժամանակ ավելի քան 20 միլիոն հեկտար վարելահողեր կորցրել են իրենց պիտանիությունը, մեծ չափով իջել է 60 միլիոն հեկտարի բերրիությունը։ Նման աղետներ տեղի են ունեցել 1928 թ. Դոն և Դնեպր գետերի միջև ընկած շրջաններում, որտեղից մոտ 400 հազար քմ հողազանգվածները ենթարկվել են տարբեր ինտենսիվության դեֆլյացիայի։ Մի շարք վայրերում փոթորիկը հողի մակերեսից պոկել և հեռացրել է 12 սմ հաստության ամենաբերրի շերտը։

Ավելի մեծ աղետներ է հասցնում ջրային էրոզիան, ձյան հալքից, ջրառատ անձրևներից և ջրային փոթորիկներից քայքայվում, լվացվում է հողի բերքատու շերտը։ Նման աղետները նույնիսկ դիտվում են 1—2° թեքության հողերում։ Ջրային էրոզիայի հետևանքով ամեն տարի գետերն ու օվկիանոսներն է թափվում մինչև 24.109 տոննա հող (որը կազմավորվել է միլիոնավոր տարիների ընթացքում)։ Գյուղատնտեսական աշխատանքների մեծածավալ մեքենայացումը, առաջին հերթին տրանսպորտի օգտագործումը, ևս առաջացնում է, այսպես կոչված, տեխնիկական էրոզիա։ Անխնա և ոչ ճիշտ ոռոգման հետևանքով տեղի է ունենում ոռոգման էրոզիա։ Այս ամենից խուսափելու նպատակով մշակվում են մի շարք արդյունավետ միջոցներ։ Ամենից առաջ չորադիմացկուն ծառային և թփային տեսակներից ստեղծվում են դաշտապաշտպան անտառաշերտեր, որոնք մեծ չափով կասեցնում են երաշտը, նվազեցնում ջրի գոլորշիացումը հողից, պահպանում են տեղումներից առաջացած խոնավությունը, ստեղծում նպաստավոր միկրոկլիմա գյուղատնտեսական կուլտուրաների համար։ Մի շարք միջոցառումներ նպաստում են հողի ջրակլանողունակության և ջրի պաշարման ունակության բարձրացմանը, դրա մեջ հումուսի պարունակության, հողի կառուցվածքի ու հիդրոֆիզիկական հատկությունների բարելավմանը։

Հողապաշտպան ընդհանուր կոմպլեքսի մեջ կարևորագույն տեղ են գրավում նաև աղակալումը կանխող միջոցառումները։ Աղակալած, գյուղատնտեսության մեջ անօգտագործելի հողերը մեծ տարածություններ են զբաղեցնում համարյա բոլոր մայրցամաքներում։ Հողերի աղակալումը հիմնականում կապ-

ված է աղերով հագեցած գրունտային ջրերի մակարդակի բարձրացման հետ։
Գյուղատնտեսությանն առավել չափով վնասում է հողերի երկրորդային աղա-
կալումը, որը հետևանք է անխնամ և օգտակարության ցածր գործակից ունե-
ցող ոռոգումների։ Նման աղակալման կասեցման հիմնական միջոցներից մեկը
ոռոգման ցանցի տեխնիկական կատարելագործումն է ջրի ֆիլտրացիայի կանխ-
ման նպատակով, ինչպես և դրենաժային միջոցների կիրառումը։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու որակի բարձրա-
ցումը պայմանավորված չէ միայն հողային ֆոնդի պաշտպանությամբ, կամ
դրա բերրիության բարձրացմամբ։ Բնավ չպետք է անտեսել այն մեծ կորուստ-
ները, որ հետևանք են գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների ու
հիվանդությունների։ Այդ կորուստը մոտավոր տվյալներով կազմում է ոչ պա-
կաս, քան բերքի 35 տոկոսը։ Այդպիսի կորուստը կանխելու նպատակով ժամա-
նակակից ագրոտեխնիկական եղանակների կիրառումից, բարձր բերքատու և
վնասատուների ու հիվանդությունների նկատմամբ դիմացկուն սորտերի ստեղ-
ծումից բացի օգտագործում են նաև 200-ից ավելի քիմիական միացություններ,
այսպես կոչված՝ պեստիցիդներ։ Միայն 1975 թ. Սովետական Միությունում
արտադրվել են 264 հազար տոննա այդպիսի քիմիական նյութեր, իսկ տասն-
մեկերորդ հնգամյակում դրանց արտադրությունը կհասցվի մինչև 628 հազար
տոննայի։ Պեստիցիդների արտադրության վրա ծախսվող յուրաքանչյուր ռուբ-
լու դիմաց մեր երկրում ստացվում է ավելի քան 9,8 ռուբլու եկամուտ։

Պեստիցիդները ոչնչացնում են բույսերի վնասատու միջատներին, կրծող-
ներին, հիվանդաբեր բակտերիաներին, վիրուսներին, սնկերին... Սակայն դրանք
ունեն մի կարևոր թերություն. սպանում են նաև բույսերի վրա ապրող օգտա-
կար կենդանիներին ու միջատներին, թափանցելով ու կուտակվելով հողի մեջ
(մանավանդ պեստիցիդների այն ձևերը, որոնք ավելի կայուն և դժվար քայ-
քայվող են), վնասակար ազդեցություն են գործում կենսոլորտի և նրա բնա-
կիչների, հատկապես հողի միկրոֆլորային ու օգտակար ֆաունայի վրա, նվա-
զեցնելով առաջին հերթին հողում տեղի ունեցող օգտակար բիոլոգիական պրո-
ցեսները։ Պեստիցիդները հասնելով ջրավազանները՝ կուտակվում են ջրային
կենդանիների մեջ, որոնցից շատերով սնվում է մարդը։ Ջրային շատ կենդա-
նիներ նույնիսկ ֆիլտրի դեր են կատարում, իրենց մեջ հավաքելով այդ վնա-
սակար նյութերը։ Այսպես, ոստրեների օրգանիզմում ԴԴՏ-ի պարունակությունը
70 հազար անգամ ավելի է, քան շրջապատի ջրերում։ Դրանց հակառակ ջրային
ու ցամաքային բազմաթիվ այլ կենդանիներ ԴԴՏ-ի փոքր դոզաներից ոչնչա-
նում են։

Գյուղատնտեսության մեջ օգտագործվող թունաքիմիկատները հայտնաբեր-
վում են ընտանի և վայրի կենդանիների օրգանիզմներում, գյուղատնտեսական
մթերքերի՝ բանջարեղենի, կաթի մեջ։ Բնականաբար, նման պայմաններում
դրանք վնասում են նաև մարդուն։ Նկատի ունենալով նման վնասները՝ մշակ-
ված են այդ նյութերի օգտագործման չափերը տարբեր կուլտուրաների և բնա-
կլիմայական պայմանների համար։

Չնայած կենսոլորտի բնակիչների վրա պեստիցիդների ունեցած բացասա-
կան ազդեցությանը, այնուամենայնիվ, գիտության զարգացման արդի փուլում
հնարավոր չէ հրաժարվել դրանցից։ Վերջիններիս կիրառման չափերը նվազեց-
նելու նպատակով այժմ միջոցներ են ձեռնարկված գյուղատնտեսական կուլ-
տուրաների վնասատուների և հիվանդությունների դեմ կենսաբանական պայ-
քարի եղանակների մշակման ասպարեզում։ Աստիճանաբար ընդլայնվում է նաև
գենետիկական ու բիոֆիզիկական պայքարի միջոցների օգտագործումը։ Տա-
րեցտարի ծավալվում է բակտերիալ պրեպարատների կիրառումը, որոնք ոչն-
չացնելով պարազիտներին, ամենևին չեն վնասում օգտակար միջատներին ու
կենդանիներին։ Ստեղծված են նաև վիրուսային պրեպարատներ, որոնց ազդե-
ցության տևողությունն ու արդյունքը շատ ավելի մեծ է։

Մշակված են և շարունակվում են մշակվել գենետիկական պայքարի նոր
եղանակներ. տարբեր գործոնների (մեծ մասամբ ռադիոակտիվ ճառագայթնե-
րի) օգնությամբ մանրազերծվում են գյուղատնտեսական վնասատուները, մեծ
քանակությամբ բազմացվում լաբորատոր պայմաններում և բաց են թողնվում



նույն վնասատուներով վարակված դաշտում։ Այդ գենետիկական արատով մի-
ջատների և բնության մեջ եղած էակների խաչաձևումից ստացված սերունդը
զուրկ է լինում բազմանալու ունակությունից։

Կենսոլորտին հաճախ վնաս են հասցնում նաև հանքային պարարտանյու-
թերը, որոնց ոչ ռացիոնալ ու երկարատև օգտագործման դեպքում հողում կու-
տակված անիոնների և կատիոնների մնացորդները հետագայում, լուծված վի-
ճակում, տեղափոխվում են հոսող կամ ստորերկրյա ջրերը, բարձրացնում
դրանցում ֆոսֆորի, ազոտի, կալիումի պարունակությունը։ Մի շարք երկրնե-
րում, որտեղ մեծ դոզաներով օգտագործում են հանքային պարարտանյութեր,
խմելու ջրերի մեջ ևս թափանցում են նշված նյութերը, որոնք վնասակար ազդե-
ցություն են թողնում մարդկանց, բույսերի և կենդանիների վրա։

Կենսոլորտի բարելավման գործում կարևորագույն նշանակություն ունեն
բույսերը, առանձնապես անտառային համակեցությունները, որոնք զբաղեցնում
են ցամաքի ավելի քան 40 տոկոսը։ Անտառները թթվածնի, բնափայտի, սննդի
տարբեր ձևերի աղբյուրներ են, դրանք ապահովում են գետերի հիդրոլոգիական
ռեժիմը, կանխում երաշտը, հողերի էրոզիան՝ հատկապես լեռնային ռելիեֆի
պայմաններում։ Անգնահատելի է և ծառերի սանիտարահիգիենիկ նշանակու-
թյունը։ Դրանք արտադրում են մեծ քանակությամբ ցնդող քիմիական միացու-
թյուններ, այսպես կոչված, ֆիտոնցիդներ, որոնք սպանում են շրջակա մթնո-
լորտի վնասակար միկրոֆլորան, միաժամանակ որակապես ներազդում կեն-
դանական օրգանիզմի կենսագործունեության վրա։ Ունենալով մեծ տերևային
մակերես, դրանք կլանում են օդի մեջ եղած փոշիացած նյութերն ու վնասակար
գազերը։ Գոլորշիացնելով իրենց արմատներով կլանված ջրի 97 տոկոսը՝ ծա-
ռերը խոնավացնում են մթնոլորտը, մեղմացնում արևի կիզիչ ճառագայթները
և քամիները, ստեղծելով բարենպաստ միկրոկլիմա ո՛չ միայն մարդկանց, այլև
գյուղատնտեսական կուլտուրաների համար։

Անտառները առանձնակի նշանակություն են ստանում բնակչության մաս-
սայական հանգստի կազմակերպման, առողջության և կենսական ուժերի վե-
րականգնման գործում։ Դժվար է պատկերացնել որևէ առողջարան, հանգստյան
տուն կամ տուրիստական բազա՝ առանց դրանք շրջապատող անտառազանգ-
վածների կամ արհեստական տնկարկների։ Այս ամենից հետո հասկանալի է, թե
որքան կարևոր են անտառների պահպանությունը, խնամքն ու վերականգնու-
մը։ Ահա ինչու անհրաժեշտ է, որ արդյունաբերական նպատակներով հատվող
անտառների փոխարեն ստեղծվեն եթե ոչ ավելի, գոնե նույն մակերեսի արհես-
տական տնկարկներ, որոնք իրենց տեսակային կազմով լինեն ավելի բարձրորակ
և բավարարեն տնտեսության զարգացման ապագա պահանջները։ Մեր երկրում
այդ պրոբլեմը լուծվել է դեռ 1963 թ., իսկ այժմ անտառների տարեկան քանա-
կական աճը զգալի չափով գերազանցում է հատումների ծավալը։

Անտառներին մեծագույն վնաս են հասցնում հրդեհները, որոնք հաճախ
հետևանք են մարդկանց անփութության։ Ամեն տարի օդ ցնդեցնելով արդյու-
նաբերության համար թանկարժեք ավելի քան 2 միլիոն տոննա օրգանական
նյութ, հրդեհները միաժամանակ վատթարացնում են շրջակա անտառների ընդ-
հանուր վիճակը, աղքատացնում դրանց ֆլորան և ֆաունան։ Անտառներին մեծ
չափով վնասում են նաև զանազան հիվանդություններն ու վնասատուները։ Այդ
միջատների ինտենսիվ բազմացման տարիներին վեգետացիոն սեզոնի ամենա-
բուռն շրջանում մերկանում են տասնյակ հազար հեկտար անտառներ։

Ինչպես գյուղատնտեսական կուլտուրաների, նույնպես և անտառների
պահպանության համար լայնորեն կիրառվում են քիմիական ու կենսաբանական
պայքարի միջոցներ, որոնք, ցավոք, դեռևս ցանկալի արդյունք չեն տալիս։ Իսկ
մեր հանրապետությունում այդ եղանակների կիրառումը դեռ չի հասել պատ-
շաճ մակարդակի ու ծավալի։

Անտառներին որոշակի վնաս են հասցնում նաև եղևինների չարդարացված
հատումները տարեմուտի տոնի առնչությամբ։ Այս նպատակով միայն վերջին
տարիներս է, որ ձեռնարկվում են որոշակի միջոցներ։ Միայն 1971—1975 թթ.
հիմնադրվել են 8,6 հազար հեկտար եղևնու տնկարկներ, արդեն սկսվել է ար-
հեստական տոնածառերի արտադրությունը, որոնք իրենց տեսքով չեն զիջում

բնականին, օգտագործվում են երկար տարիներ, և, ամենակարևորը, չեն նվազեցնում ծառերի թիվը եղևնուտներում։

Անտառների պահպանության, խնամքի ու վերականգնման գործում մեծ են հասարակական կազմակերպությունների՝ բնության պահպանության ընկերությունների, կոմերիտական ու դպրոցական կազմակերպությունների, մեր երկրում գործող դպրոցական անտառապետությունների դերն ու անելիքները։

Խոշոր քաղաքներում և արդյունաբերական կենտրոններում կենսոլորտի պահպանության տարրերից է և վնասաբեր աղմուկի նվազեցման պրոբլեմը։ Աղմուկը ո՛չ միայն հարուցում է լսողության կորուստ, այլև առաջացնում է բազմաթիվ հիվանդություններ, առաջին հերթին կապված նյարդային համակարգի հետ։ Այն խանգարում է քունը, խախտում ներքին սեկրեցիայի գեղձերի գործունեությունը, կարճացնում մարդկանց կյանքը և այլն։

Քաղաքների աղմուկի հիմնական աղբյուր են ռելսային և օդային տրանսպորտը, արդյունաբերական ձեռնարկությունները։ Աղմուկից բնակչության պաշտպանության հիմնական եղանակը քաղաքաշինարարության նոր սկզբունքների կիրառումն է. ավտոմայրուղիները պետք է կառուցվեն բնակելի շենքերից հեռու, աղմուկ առաջացնող օբյեկտները շրջապատվեն կանաչապատ գոտիով, բնակելի շենքերի շինարարության մեջ լայնորեն օգտագործվեն ձայնակլանիչ շինանյութեր։

Կենսոլորտի պահպանության հարցը արդի փուլում ունի համամարդկային նշանակություն։ Բնական էներգետիկ աղբյուրների (նավթի, ածխի, գազի, տորֆի և այլն), ինչպես և հանքային ռեսուրսների մեծ մասշտաբներով օգտագործումը աներևակայելի փոփոխություններ է հարուցել մթնոլորտում և օվկիանոսներում։ Նման պայմաններում առաջին հերթին կարևորագույն խնդիր է դառնում շրջակա միջավայրի վիճակի գնահատումը և դրա հնարավոր փոփոխությունների կանխագուշակումը, այսպես կոչված, մոնիտորինգի եղանակով։ Նշված պրոբլեմը կարելի է լուծել միայն կենսոլորտի զարգացման օրենքների խորիմացությամբ և դրա հիման վրա մշակելով ժողովրդական տնտեսության զարգացման այնպիսի օպտիմալ եղանակներ, որոնք հավասար չափով հաշվի առնեն ո՛չ միայն արտադրության հետագա զարգացման, այլև միջավայրի պահպանության շահերը։ Նման խնդրի դժվարալուծելիությունը հետևանք է այն բանի, որ այդ ոլորտում իրականացվող ամեն մի միջոցառում մեծ չափով պայմանավորված է տվյալ երկրի սոցիալական կառուցվածքով։ Եթե իմպերիալիզմի պայմաններում գիտատեխնիկական առաջընթացի հիմնական նպատակը մի խումբ մոնոպոլիստների (կորպորացիաների) կողմից մաքսիմում եկամուտների ստացումն է, ապա հասկանալի է, որ հոգածությունը շրջակա միջավայրի անաղարտության պահպանման նկատմամբ իր բնույթով տարբեր է սոցիալիստական երկրներում կիրառվող ձեռնարկումներից, որոնք իրականացվում են պետական միջոցներով, պետականորեն։ Ավելին, արդի իմպերիալիզմի զարգացման ընդհանուր միտումը չի բացառում կենսոլորտի այնպիսի արմատական կերպարանափոխություն, որը կբացառի ինչպես մարդկային հասարակության, այնպես էլ կենդանական ու բուսական աշխարհի գոյության ամեն մի հնարավորություն։ ԱՄՆ-ի ու նրա դաշնակիցների ներկա և պլանավորվող ռազմական մրցավազքը, ջերմամիջուկային զենքի նոր տեսակների ստեղծումն ու ագրեսիվ քաղաքականությունը ուժեղացնում են ջերմամիջուկային աղետի հնարավորությունը, որի կործանիչ ազդեցությունը կենսոլորտի վրա դժվար չէ պատկերացնել։

Բոլորովին այլ հիմունքների վրա է դրված կենսոլորտի պահպանության և դրա բարելավման գործը սոցիալիստական երկրներում, որտեղ բնական ռեսուրսները պետական սեփականություն են։ Սոցիալիստական աշխարհում մարդկանց բարեկեցությանն ու հոգևոր հարստացմանն են ծառայում գիտության, արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացումը, կենսոլորտի բարելավումը։ Խաղաղության պահպանման, զենքի բոլոր տեսակների, հատկապես ջերմամիջուկային զենքի արգելման, դրա պաշարների կրճատման նպատակով Սովետական Միության, սոցիալիստական երկրների գործադրած ջանքերը նույնպես կենսոլորտի պահպանության նկատմամբ մեծագույն հոգատարության արտահայտություն են։

---



# ԱՐԳԱՍԱԼԻ ԿՅԱՆՔ

(Լ. Ա. ՕՐԲԵԼՈՒ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Վ. Բ. ՖԱՆԱՐՋՅԱՆ**
Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս



Սովետական ականավոր գիտնական, ֆիզիոլոգիական խոշորագույն դպրոցներից մեկի հիմնադիր ակադեմիկոս Լևոն Աբգարի Օրբելին համընդհանուր ճանաչում ու հռչակ է վաստակել ո՛չ միայն գիտության այդ ասպարեզում կատարած փայլուն հետազոտությունների, տեսական խոր ընդհանրացումների, այլև գիտության կազմակերպման, ժամանակակից գիտության արմատական խնդիրների լուծման նպատակով բազմաթիվ հետազոտողների ջանքերը միավորելու համար։ Լ. Ա. Օրբելու ստեղծագործական ուղին բնորոշվում է գիտական մտածելակերպի զարմանալի նպատակասլացությամբ, հետևողականությամբ ու ամբողջականությամբ, հատկանիշներ, որոնց շնորհիվ և նա կատարեց համաշխարհային փառք նվաճած հայտնագործություններ։ Նրա արտահայտած մտքերը և գիտական տեսությունները հիմք հանդիսացան ներկայումս հարուստ ծիլեր տվող նոր հետազոտությունների համար։

Օրբելու աշխատությունները չեն հնանում, ավելին, այժմ, երբ մեծ գիտնականի մտքի սերմերի մեծ մասը բարերար հող է ստեղծել լայնածավալ հետազոտությունների համար, նոր ենք միայն սկսում ըստ արժանվույն հասկանալ ու գնահատել նրա գիտական մտքի ողջ խորությունը։ Լ. Ա. Օրբելին ականավոր նորարար էր. նա արմատապես վերափոխեց մեր պատկերացումները ֆիզիոլոգիական գիտության տարբեր բնագավառների վերաբերյալ։ Օրբելու ստեղծագործական ուղին սկսվել է 1901 թ., երբ նա եկավ Ի. Պ. Պավլովի լաբորատորիան. այդ տարիներին Պավլովն զբաղեցնում էր ռազմաբժշկական ակադեմիայի ամբիոնը։ Այստեղ, դեռևս ուսանող, Լ. Ա. Օրբելին կատարում է իր առաջին գիտական աշխատանքը, որի համար ռազմաբժշկական ակադեմիայի կոնֆերանսում նրան շնորհվում է ոսկե մեդալ։ Ուսումն ավարտելուց հետո էլ Օրբելին շարունակում է հետազոտական աշխատանքը նույն լաբորա-

ուղեղն անբաժանելիորեն կապված է ուղերի վերադիր բաժինների հետ։ Հանդես գալով «արգելակիչ օգնականի» դերում, փոքր ուղեղն ըստ Օրբելու «...կանոնավորում է ներվային համակարգության գրգռվածության վիճակը, պահպանում որոշակի ֆունկցիոնալ առանձնահատկությունները, խոր միջամտությունների ժամանակ կարող է վերացնել բոլոր կոորդինացիոն փոխհարաբերությունները, իսկ իր նորմալ գործունեության դեպքում՝ որոշակի մակարդակի վրա պահպանել կենտրոնական ներվային համակարգության գրգռականությունը և, այդպիսով, մեծ կիսագնդերին հնարավորություն է ընձեռում ճիշտ օգտագործելու իրեն ենթարկվող ողնուղեղային ապարատը» (նույն տեղը, էջ 374)։ Շնորհիվ այդ օպերատիվ հատկությունների «...փոքր ուղեղը հանդիսանում է մեծ կիսագնդերի աջակիցը բնածին կոորդինացիոն հարաբերությունների ճնշման և նոր կոորդինացիոն կապերի ստեղծման հնարավորության ապահովման գործում» (Л. А. Орбели, Новые представления о функциях мозжечка. Успехи современной биологии, т. 13, 1940, стр. 217)։

Լ. Ա. Օրբելու պատկերացումներում արգելակման կայունացնող դերը հանդես է գալիս որպես փոքր ուղեղի ընդհանուր մոդուլյատոր ազդեցության հիմնական մեխանիզմներից մեկը։ Ներկայումս այս դրույթն իր փայլուն հաստատումն է գտել էլեկտրաֆիզիոլոգիական հետազոտություններում, որոնք ցույց են տալիս փոքր ուղերի կեղևում արգելակիչ մեխանիզմների արտակարգ զարգացումը և Պուրկինեի բջիջների՝ փոքր ուղերի կեղևի միակ էֆերենտային (ելքային) նեյրոնների արգելակիչ բնույթը։

Լ. Ա. Օրբելու ուսումնասիրությունները մեծ դեր խաղացին անալիզատորների ֆիզիոլոգիայի մշակման ոլորտում։ Ֆիզիոլոգիայի այս բնագավառով Օրբելին հետաքրքրվում էր դեռ երիտասարդ տարիներին։ Այդ եղել է նրա դոկտորական դիսերտացիայի թեման, որը կատարվել է պավլովյան լաբորատորիայում, շան տեսողական պայմանական ռեֆլեքսների մեթոդով։ Արտասահմանում, Գերինգի լաբորատորիայում գտնվելու ընթացքում, Օրբելին ժամանակի մեծ մասը հատկացրել է տեսողության ֆիզիոլոգիայի ուսումնասիրմանը։ Մեծ գիտնականի լաբորատորիան հանդիսացավ այն կենտրոններից մեկը, ուր ձևավորվեց զգայարանների սովետական ֆիզիոլոգիան։ Այստեղ կատարվել են ինքնատիպ հետազոտություններ մթության աչքի հարմարվելու, մաշկային զգայնության երկու ձևերի— առավել կոպիտ պրոտոպատիկական և ավելի նուրբ էպիկրիտիկական— փոխազդեցությունների ուսումնասիրման վերաբերյալ, վերլուծվել են լսողական օրգանի հարմարողական մեխանիզմները ձայնային գրգռիչների փոփոխական ուժի նկատմամբ, պարզաբանվել են ձայնի ընկալման համար տարբեր գործոնների նշանակությունը, հետազոտվել ցավի զգացողությունը, դրա ընկալիչ հարմարանքը, գրգռման ընթացքը կենտրոնական ներվային համակարգության ներսում, ցավի ճառագայթման բնույթը ներքին օրգանների հիվանդությունների ժամանակ և այդ պրոբլեմի նևրոլոգիական ասպեկտը։ Զգայարանների տարբեր բաժինների վերաբերյալ հաջող հետազոտությունները հնարավորություն ընձեռեցին Օրբելուն առաջադրելու գաղափար տարբեր աֆերենտային համակարգերի փոխհարաբերությունների և փոխազդեցությունների մասին։ Այդ գաղափարի զարգացումը մոտեցրեց առավել ընդհանուր ֆիզիոլոգիական պրոբլեմի— օբյեկտիվության և սուբյեկտիվության փոխհարաբերությունների, արտաքին իրականության արտացոլման իմացության օրինաչափությունների պրոբլեմի լուծման։ Այս բոլոր աշխատանքներով Լ. Ա. Օրբելին սերտորեն մոտենում է կարևոր պրակտիկ խնդիրների շարքին, որոնք իրենց հաջող լուծումն են գտնում շոկի, ցավի, էլեկտրավնասվածքների և ախտաբանական այլ վիճակների մեխանիզմների ուսումնասիրման ժամանակ։

Օրբելին հիմնադիրներից մեկն է ֆիզիոլոգիական գիտության նոր, պրոգրեսիվ բնագավառի՝ էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի, որը, որպես ինքնուրույն գիտության ճյուղ, առաջադրվել է մեր երկրում։ Պրոբլեմի նկատմամբ ունենալով լայն կենսաբանական մոտեցում և լինելով պատմական մեթոդի կողմնակից կենսաբանության մեջ, Օրբելին ամենատարբեր հարցերի մշակման ժամանակ



կիրառել է ֆիզիոլոգիական պրոցեսների ուսումնասիրման էվոլյուցիոն մոտեցման սկզբունքը։

Զարգացման տեսությունը Լ. Ա. Օրբելու համար դառնում է ֆիզիոլոգիական երևույթների ուսումնասիրման հիմնական մեթոդներից մեկը, իսկ դարվինիզմի սկզբունքներն ավելի խորացված լուսաբանվում են ֆիզիոլոգիական գիտության շնորհիվ, այդպիսով ի հայտ են գալիս նաև օրգանիզմում ֆունկցիոնալ հարաբերությունների ծագման ու ձևավորման սկզբունքային կողմերը։

Լեոն Աբգարովիչի էվոլյուցիոն-ֆիզիոլոգիական մտածելակերպը ձևավորվել է Ի. Պ. Պավլովի ընդհանուր կենսաբանական հայացքների անմիջական ազդեցությամբ, հատկապես բարձրագույն ներվային գործունեության հարցերի վերաբերյալ։ Պավլովը շեշտում էր այն հանգամանքը, որ պայմանական ռեֆլեքսների ուսումնասիրությունը՝ ռեֆլեքսների ուսումնասիրությունն է դրանց ծագման, ամրապնդման ու զարգացման մեջ, որը հնարավորություն է ընձեռում պայմանական ռեֆլեքսների ձևավորման պատմության հիման վրա դատելու այն մասին, թե ինչպես է ձևավորվել ընդհանրապես ռեֆլեկտոր գործունեությունը էվոլյուցիոն պրոցեսում։ Դրանով Պավլովը փաստորեն շարունակել և խորացրել է Ի. Մ. Սեչենովի գիծը, որը գիտականորեն հիմնավորել է խոր էվոլյուցիոն եզրակացությունը օրգանիզմի և արտաքին միջավայրի միասնության մասին։ Օրբելին մշտապես նշում էր, որ Ի. Մ. Սեչենովի և Ի. Պ. Պավլովի հետազոտությունները կանխորոշեցին էվոլյուցիոն ուղղության զարգացումը ֆիզիոլոգիայում։ Պատահական չէ, որ նրա հիմնադրած էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի և բիոքիմիայի ինստիտուտը կրում է Ի. Մ. Սեչենովի անունը։

Վերլուծելով մեր երկրում էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի ծագման պայմանները, հատկապես այն հանգամանքը, որ սովետական ֆիզիոլոգներն ավելի վաղ, քան որևէ այլ երկրի ֆիզիոլոգներ, կանգնեցին էվոլյուցիոն ուղու վրա, իր վերջին ելույթներից մեկում անվանի գիտնականն ասել է. «Փորձարարական գիտության ականավոր գործիչների ցուցումների հետ մեկտեղ մենք ունենք նաև այլ, ոչ պակաս կարևոր, գուցե և ավելի կարևոր հիմնավորում— այդ այն է, որ սովետական ողջ գիտությունը զարգանում է դիալեկտիկական մատերիալիզմի՝ միակ ճիշտ փիլիսոփայական ուսմունքի սկզբունքների հիման վրա։ Մարքսիստական-լենինյան ուսմունքը պարտադրում է բնական գիտությունների բնագավառի յուրաքանչյուր հետազոտողի՝ պահպանել այն սկզբունքը, որ ոչ մի երևույթ հասկանալի չի կարող լինել, եթե չպարզաբանվի իր ծագման, զարգացման պատմության մեջ։ Հետազոտման միայն պատմական մեթոդն է հնարավորություն տալիս ճիշտ հասկանալու առարկան։ Մարքս-լենինյան փիլիսոփայության պահանջներից և մեր մեծ նախորդների ցուցումներից ելնելով ենք մենք մոտենում էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի պրոբլեմին» (Л. А. Орбели, Основные задачи и методы эволюционной физиологии. В сб: Эволюция функций нервной системы. Изд. «Медгиз», Л., 1958, стр. 7—8)։

Ի տարբերություն մի շարք խոշոր ֆիզիոլոգների (իր ժամանակակիցների, որոնք նույնպես իրենց հետազոտություններում ելնում էին էվոլյուցիոն ուսմունքից), Օրբելին խոր ու բազմակողմանիորեն հիմնավորեց իր էվոլյուցիոն եզրակացությունները, գործնականորեն ցույց տվեց դրանց նշանակությունը և նշեց հետագա հետազոտությունների ուղիներն ու եղանակները էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի բնագավառում։

1956 թ. «Էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի հիմնական խնդիրներն ու մեթոդները» զեկուցման մեջ, որը կարելի է համարել անխոնջ գիտնականի ստեղծագործական ուղու լուսապսակը, ուր ամփոփված է ֆիզիոլոգիայի համարյա բոլոր բնագավառներում իր կատարված աշխատանքների կեսդարյա փորձը, նա ասել է. «...եկել է ժամանակը, որպեսզի էվոլյուցիոն սկզբունքը հանդիսանա ոչ թե պարզապես ուղենիշ ֆիզիոլոգիական աշխատանքների զարգացման համար, այլ որպես արդյունք այն հաջողությունների, որոնք ձեռք է բերել ֆիզիոլոգիական ողջ գիտությունը, ներկա ժամանակում ձևավորվի ինքնուրույն մի դիսցիպլին՝ էվոլյուցիոն ֆիզիոլոգիա» (նույն տեղը, էջ 8)։

Հայրենական և համաշխարհային գիտության ասպարեզում Լ. Ա. Օրբելու

անգնահատելի վաստակն այն է, որ հատկապես նա է ձևակերպել այդ գիտության էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի մեթոդի էությունը և հիմնական բովանդակությունը։ Ըստ Օրբելու, էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի մեթոդը պետք է ներառնի հետազոտման չորս եղանակ. համեմատական-ֆիզիոլոգիական, օնտոգենետիկ, փորձարարական խախտումների և կլինիկական։ Լեոն Աբգարովիչը շեշտել է. «...ֆունկցիաների էվոլյուցիոն փոփոխման հիմքում ընկած ֆունկցիաների էվոլյուցիայի և մեխանիզմների ճիշտ ըմբռնումը հնարավոր է միայն միևնույն հետազոտողի կողմից չորս եղանակների միաժամանակյա օգտագործման դեպքում, որոնք, չնայած սկզբունքորեն տարբեր են, բայց հանգեցնում են միևնույն նպատակին» (նույն տեղը, էջ 11)։ «Մենք պետք է ձգտենք այն բանին,— ասել է նա,— որ փորձարարական ֆիզիոլոգիայում ուսումնասիրվող յուրաքանչյուր ֆունկցիա դիտվի դրա ձևավորման պատմության տեսանկյունից... Այդ ֆունկցիաների էվոլյուցիայի ուսումնասիրման հարցն է։ էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի երկրորդ, ոչ պակաս կարևոր, գուցե և ավելի կարևոր խնդիրը պետք է լինի ֆունկցիոնալ էվոլյուցիան... Ֆունկցիոնալ էվոլյուցիան էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի ավելի բարձր աստիճանն է, քան ֆունկցիաների էվոլյուցիայի ուսումնասիրությունը։ Մի դեպքում մենք միայն հետևում ենք այս կամ այն ֆունկցիոնալ հարաբերությունների զարգացման պատմական ուղուն, իսկ երկրորդ դեպքում հասնում ենք այն բանի ըմբռնմանը, թե ինչու հատկապես այդպես է ընթացել էվոլյուցիոն պրոցեսը այն ֆունկցիոնալ վերափոխումների հիման վրա, որոնք ծագել են կենդանի օրգանիզմներում» (նույն տեղը, էջ 9—10)։ Այսպիսով, Լեոն Աբգարովիչը էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի առարկան ֆունկցիաների ձևավորման հետ մեկտեղ համարել է էվոլյուցիոն պրոցեսի ֆիզիոլոգիական օրինաչափությունների ուսումնասիրությունը։

Լ. Ա. Օրբելին շեշտել է, որ «էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի պսակը պետք է հանդիսանա և նշանակալի չափով արդեն հանդիսանում է ձգտումը ուսումնասիրելու մարդու բարձրագույն ներվային գործունեությունը դրա ձևավորման ու զարգացման պրոցեսում» (նույն տեղը, էջ 16)։ Ըստ Խ. Ս. Կոշտոյանցի, այդ եզրակացությունը պետք է հսկայական նշանակություն ունենա պատասխանելու համար այն հարցին, որ առաջադրել է Վ. Ի. Լենինը զարգացման տեսության գնահատման ժամանակ. «Եթե ամեն ինչ զարգանում է, ապա վերաբերո՞ւմ է արդյոք սա մտածողության ընդհանուր հասկացողություններին և կատեգորիաներին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 38, էջ 351)։

Դժվար է գերագնահատել այն նշանակալից լուման, որը ներդրել է Օրբելին ֆիզիոլոգիական գիտության մեջ, հաստատելով դրանում էվոլյուցիայի գաղափարը։ Չափազանց բարդ ֆիզիոլոգիական մեխանիզմների ուսումնասիրման ոլորտում էվոլյուցիոն սկզբունքի հաղթանակը փայլուն դրսևորվել է Օրբելու և նրա դպրոցի կողմից վեգետատիվ ներվային համակարգության, ուղեղում կոորդինացիոն հարաբերությունների, մկանային ապարատի ներվավորման, փոքր ուղեղի, երիկամների ֆիզիոլոգիայի հետազոտման և բազմաթիվ այլ հարցերում։

Օրբելին գործուն մասնակցություն է ունեցել պայմանական ռեֆլեքսների ուսմունքի մշակմանը։ Նրա դիսերտացիոն աշխատանքը Ի. Պ. Պավլովի լաբորատորիայում սկսվել է 1905 թ., միայն 4 տարի հետո, այն բանից, երբ Ի. Պ. Պավլովի կողմից սկզբնավորվեց ֆիզիոլոգիայի նոր ճյուղը։ Նա եղել է Պավլովի ամենաականավոր աշակերտներից մեկը և աշխատել իր ուսուցչի լաբորատորիայում նրա ստեղծագործական մտահղացումների բարձրագույն վերելքի ժամանակաշրջանում։ Պավլովի մահից հետո Օրբելու՝ բարձրագույն ներվային գործունեության ուսումնասիրության պիոներներից մեկի, վրա են դրվում հանճարեղ ֆիզիոլոգի գիտական ժառանգության հետագա մշակման պարտականությունները։ Զարգացնելով կլասիկ պավլովյան ուղղությունը՝ Լ. Ա. Օրբելին հետազոտություններ է կատարում գլխուղեղի կեղևի վիճակը պայմանավորող գործոնների ուսումնասիրության վերաբերյալ. վերլուծվում են բարձրագույն ներվային գործունեության վրա վեգետատիվ ներվային համակարգության և էնդոկրին գեղձերի ազդեցությունները։ Օրբելու և նրա գործակիցների աշխատանքներում կենտրոնական խնդիրներից մեկը և փորձարարական ուսումնասիրության հատուկ առարկան են դառնում կիսագնդերի կեղևի գործունեության վրա ենթակեղևային գոյացությունների ազդեցության մեխանիզմները։ Այդ ուղղությամբ կատարված հետազոտությունները մեծ չափով կանխորոշեցին հետագա աշխատանքները, որոնք հանգեցրին ուղեղաբնային կառուցվածքների վերընթաց ազդեցությունների մասին ժամանակակից պատկերացումներին։

Կատարվում են հետազոտություններ պայմանական ռեֆլեքսների համեմատական և տարիքային ֆիզիոլոգիայի, բարձրագույն ներվային գործունեության փորձարարական գենետիկայի վերաբերյալ։

Հետաքրքրական են կենդանիների վարքագծի ձևերի վերլուծության և ձեռքբերովի ու բնածին ռեֆլեկտոր գործողությունների դերի պարզաբանման վերաբերյալ աշխատանքները։ Հարկ է նշել, որ Օրբելու և նրա աշխատակիցների հետազոտությունները ձևավորվող պայմանական ռեֆլեքսների հետ փոխազդեցության պրոցեսում անպայման ռեֆլեքսների ձևավորման վերաբերյալ, Օրբելու այն եզրահանգումը, որ գործունեության որոշ բնածին ձևեր հասունանում են ծնվելուց հետո, որը հատկապես ցայտուն է դրսևորվում մարդկանց մոտ, կանխորոշեցին էթոլոգիայի շատ նորագույն նվաճումներ։

Օրբելին մեծ ուշադրություն է նվիրել մարդու բարձրագույն նյարդային գործունեության ուսումնասիրմանը։ Նրա լաբորատորիաներում հետազոտվել են երեխաների հոգեբանության ձևավորման օրինաչափությունները, վերլուծվել բառային գրգռիչների նշանակությունը, որոնք, ըստ պավլովյան տերմինաբանության, «երկրորդ ազդանշանային համակարգի» գրգռիչներ են օրգանիզմի բարձրագույն ֆունկցիաների ձևավորման ընթացքում։ Ընթանալով Պավլովի ուղիով՝ Օրբելին հետազոտում է հոգեբուժական և նյարդային կլինիկաների հիվանդներին, փորձելով ռեֆլեկտոր գործունեության քայքայման, թուլացման և դեգրադացիայի համեմատաբար պարզեցված պայմաններում հասկանալ մարդու բարձրագույն նյարդային համակարգության բարդ ձևերը։

Ամենայն կրքով Օրբելին պաշտպանում էր մատերիալիզմը ֆիզիոլոգիայի և հոգեբանության ոլորտում։ Փիլիսոփայության և ամենից առաջ դիալեկտիկական մատերիալիզմի խոր իմացությունը հնարավորություն էր ընձեռում նրան փորձարարական ու տեսական ամենօրյա աշխատանքում ապացուցելու ֆիզիոլոգիական գիտության նվաճումները իմացության լենինյան տեսության հետ զուգակցելու վիթխարի հեռանկարայնությունը, Պավլովի գիտական ժառանգության ստեղծագործական զարգացման անհրաժեշտությունը։

Փայլուն հետազոտությունների նոր շարքով հարստացնելով Պավլովի գիտական ժառանգությունը՝ Օրբելին իր պարտքն է համարում յուրաքանչյուր տարի հաշվետվությամբ հանդես գալ այն մասին, թե ինչ է արված իր ուսուցչի ուսմունքի զարգացման ասպարեզում, վերլուծում, վիճարկում է քննադատների առարկությունները, ապացուցելով բարձրագույն նյարդային համակարգության մասին ուսմունքի նշանակությունը կենսաբանության, մանկավարժության, բժշկության, փիլիսոփայության և այլ դիսցիպլինների համար, դրա դիալեկտիկամատերիալիստական էությունը։ Լեոն Աբգարովիչը պարբերաբար ընդհանրացնում է հավաքված փաստական մեծ նյութը, կարդում դասախոսությունների երկու դասընթաց՝ բարձրագույն նյարդային գործունեության մասին Պավլովի ուսմունքի վերաբերյալ, որոնցում առավել հստակ է արտացոլված Լ. Ա. Օրբելու վերաբերմունքը Պավլովի գործի, նրա անձի, գիտական հանճարի նկատմամբ։

1949 թ. լույս տեսած և Ի. Պ. Պավլովի ծննդյան 100-ամյակին նվիրված իր **Բարձրագույն նյարդային գործունեության հարցերը** գրքում Օրբելին գրել է, որ իրեն մեծ երջանկություն է վիճակվել լինել Իվան Պետրովիչ Պավլովի ուսմունքի վերածննդի վկան և համեստ մասնակիցը դրա զարգացման, հետևորդը այն ստեղծագործական աշխատանքի, որ կատարեց մտածող մարդկության այս հանճարեղ ներկայացուցիչը 35 տարիների ընթացքում։ Նա ականատես էր նրա բուռն ոգևորության և կասկածանքի ու անհանգստության այն պահերի, որ ապրում էր նա առանձին փաստերի ու մտքերի ճշգրտման համար. նա

տեսակ բնական-գիտական մատերիալիստական աշխարհայացքի համար պայքարող մարտիկի կրքոտությունը այլ տեսակետի համախոհների հետ բախվելիս: Իվան Պետրովիչ Պավլովի անժամանակ վախճանից հետո Օրբելին դարձավ այն երեք հաստատությունների ղեկավարը, որտեղ աշխատել էր իր ուսուցիչը. ստանձնելով պատվավոր ու պատասխանատու այդ խնդիրը՝ նա հասկանում էր, որ իրեն սպասում են մեծ ուրախություններ ու դժվարություններ, պայքար ուսուցչի հայացքների և երազանքների ճիշտ մեկնաբանման համար, հոգածություն պավլովյան ուսմունքից ծագող կարևոր եզրահանգումների ու գիտական տենդենցների բացահայտման ու հետագա զարգացման նկատմամբ, գիտականորեն հիմնավորված մատերիալիստական աշխարհայացքի զարգացմանն աջակցելու նպատակով նրա նշած ուղիների օգտագործման համար (տե՛ս Л. А. Орбели, Вопросы высшей нервной деятельности. Изд. АН СССР, М.,—Л., 1949, стр. 4—5):

Իր ողջ ստեղծարար գործունեության ընթացքում Օրբելին ձգտում էր տեսության ու պրակտիկայի միասնության: Իր ելույթներից մեկում նա ասել է. «...մեր մոտեցման հիմքը միշտ պետք է լինի տեսության ու պրակտիկայի միասնությունը... այն պետք է լինի ղեկավարող օղակ, որը թույլ չտա մեզ մեկուսանալ կյանքի պրակտիկայից և չվախենալ այն բանից, որ այս կամ այն խնդիրը, այս կամ այն փորձարարական ուղին կրում է կիրառական գիտության բնույթ: Չկա տեսական ու կիրառական գիտություն, կա և պետք է լինի մեկ գիտություն» (Л. А. Орбели, Основные задачи и методы эволюционной физиологии. В сб. Эволюция функций нервной системы. Изд. «Медгиз», 1958, стр. 17):

Լևոն Աբգարովիչի գործունեության բնորոշ առանձնահատկությունը բժշկության մեջ ֆիզիոլոգիական տեսական դրույթների օգտագործման մշտական ձգտումն է: Նա խորապես հետաքրքրվում էր բժշկության հարցերով և միշտ ձգտում էր իր տեսական որոնումները կապել բժշկական պրակտիկայի հետ: Բժշկի ամենօրյա գործունեության մեջ նա է ներդրել ֆիզիոլոգիայի տեսական շատ պատկերացումներ:

Վաստակաշատ գիտնականը 25 տարի շարունակ ղեկավարել է ռազմաբժշկական ակադեմիայի ֆիզիոլոգիայի ամբիոնը՝ փոխարինելով այդ պաշտոնում Պավլովին, որոշ ժամանակ նա գլխավորել է ռազմաբժշկական ակադեմիան: Օրբելու և նրա դպրոցի կողմից է տրվել էքստրեմալ պայմաններում աշխատանքի առանձնահատկությունների ֆիզիոլոգիական վերլուծությունը, ուսումնասիրվել օրգանիզմի վրա դրանց ազդեցությունը, մշակվել են մարդու վրա վնասակար ազդեցությունների կանխման ուղիները: Հետազոտվել է լարված մկանային գործունեության ժամանակ մարսողության, երիկամների և ջրաաղային փոխանակության պրոցեսների ֆիզիոլոգիան: Ուսումնասիրվել է օրգանիզմի վրա էլեկտրական հոսանքի և էլեկտրամագնիսական դաշտի ազդեցությունը, ֆիզիկական աշխատանքի կատարման ժամանակ հոգնածության պրոցեսների տարբեր կողմերը, ցավային գրգռիչների ազդեցության մեխանիզմները, մշակվել են տիեզերական ֆիզիոլոգիայի որոշ գործնական հարցեր: Ներկայումս նշված հարցերը ինտենսիվորեն մշակվում են ամբողջ աշխարհի գիտական հաստատություններում: Մինչդեռ կես դար առաջ փոքրաթիվ գիտնականներ էին միայն ճիշտ գնահատում դրանց դերը:

Հատկապես մեծ նշանակություն ունեցան Օրբելու և նրա աշակերտների ներդրումները երկու արմատական պրոբլեմների մշակման ասպարեզում— խոր ստորջրյա իջեցումների ֆիզիոլոգիայի և բարձր ու մեծ արագության թռիչքների ֆիզիոլոգիայի: Տաղանդավոր կազմակերպչի լաբորատորիաներում ուսումնասիրվում է օրգանիզմի վրա մթնոլորտային ճնշման փոփոխության ազդեցությունը, թթվածնի թունավոր ազդեցությունը պարցիալ ճնշման բարձրացման ժամանակ, մշակվում է դեկոմպրեսիայի նոր եղանակ, որը հնարավորություն կընձեռի նշանակալիորեն մեծացնելու սուզման խորությունը և կրճատելու վերելքի ժամանակը: Կատարված հետազոտությունների հիման վրա մշակվեց անհատական փրկիչ սարքավորում ջրային արգելքների հաղ-



թահարման համար, և սովետական ջրասուզակները հասան այնպիսի խորության, որ սահմանեցին համաշխարհային ռեկորդ:

Ուսումնասիրելով օդագնացության ֆիզիոլոգիայի հարցերը, Օրբելին և նրա աշխատակիցները վերլուծում են օրգանիզմի վրա ստրատոսֆերային պայմանների ազդեցությունը և այդպիսով մասնակցում սովետական առաջին ստրատոստատների թռիչքին: Մեծ ուշադրություն է նվիրվում թթվածնային քաղցի պրոբլեմին, թռիչքների ժամանակ օդաչուների առողջության և աշխատունակության վրա մթնոլորտային ճնշման անկումների ազդեցության ուսումնասիրությանը: Կատարվում է օրգանիզմի գերծանրաբեռնվածության ժամանակ մեծ արագությունների ազդեցության մանրակրկիտ ֆիզիոլոգիական ուսումնասիրություն, բացահայտվում են օրգանների ու համակարգերի վրա կենտրոնախույս ուժերի ազդեցության մեխանիզմները, մշակվում են կատապուլտով (ինքնանետիչով) դուրս նետվելու ֆիզիոլոգիական հիմունքները: Այս և նման հետազոտություններով Օրբելին հսկայական ավանդ ներմուծեց օդագնացության բժշկության զարգացման մեջ: Ահա ինչու 1964 թվականին առաջին բժիշկ-տիեզերագնաց Բ. Բ. Եգորովը ելույթ ունենալով Կարմիր հրապարակում, երախտագիտությամբ նշեց Լևոն Աբգարիչ Օրբելու անունը այն գիտնականների շարքում, որոնք նպաստեցին տիեզերքում մեր երկրի հաղթանակին:

Շատ բան է արել հայրենասեր գիտնականը Հայրենական մեծ պատերազմի տարիներին, ռազմական ֆիզիոլոգիայի բազում հրատապ պրոբլեմների մշակման խնդրում: Երկրի համար այդ ծանր ժամանակներում գիտնական-ֆիզիոլոգներն իրենց ողջ գիտական փորձը ի սպաս դրին ժողովրդի և բանակի առջև ծառացած դժվարին խնդիրների լուծմանը:

Օրբելու աշխատակիցները հետազոտում են կոնտրակտուրայի առաջացման ֆիզիոլոգիական մեխանիզմները, կաուզալգիայի, տրավմատիկ շոկի վիճակը, մանրակրկիտ ուսումնասիրում զգայական օրգանների և այլ ներվային ֆունկցիաների գործունեության խախտումները «օդային կոնտուզիայի» պայմաններում, հետազոտում են տարբեր համակարգերի ֆունկցիաները գանգի բաց վնասվածքների ժամանակ, վերլուծում ուղեղի և թոքերի այտուցների ծագման ու ընթացքի մեխանիզմները: Մեծ ուշադրություն է նվիրվում սեպսիսի վաղ ախտորոշմանը, վերքերի վրա դեղորայքի գործած ազդեցությանը: Կատարվում է ուղեղի աշխատունակությունը պահպանող նյութերի հետազոտություն, որն օգնում է պայքարելու գերհոգնածության դեմ: Այսպիսին է այն հարցերի ոչ լրիվ ցանկը, որոնք հաջողությամբ մշակվում են Օրբելու դպրոցում էվակուացիայի պայմաններում: Կիրառական ֆիզիոլոգիայի հարցերը շարունակում են հետաքրքրել Օրբելուն և պատերազմից հետո. ուսումնասիրվում է կենդանի օրգանիզմի վրա իոնիզացնող ճառագայթման ազդեցությունը:

Լևոն Աբգարովիչը գիտության հմուտ կազմակերպիչ էր: Դեռ երիտասարդ տարիներին նա մասնակցել է ռուսաստանյան ֆիզիոլոգների ընկերության կազմակերպմանը և Ի. Մ. Սեչենովի անվան ֆիզիոլոգիական ամսագրի ստեղծմանը: Նրա անմիջական ղեկավարությամբ կազմակերպվել են գիտահետազոտական մի շարք ինստիտուտներ, ամբիոններ, լաբորատորիաներ, սկսած Պ. Ֆ. Լեսգաֆտի անվան Պետրոգրադի գիտական ինստիտուտի (1918) ֆիզիոլոգիական բաժանմունքից և վերջացրած ՍՍՀՄ ԳԱ Սեչենովի անվան էվոլյուցիոն ֆիզիոլոգիայի և բիոքիմիայի ինստիտուտով (1956): Տարբեր տարիների նա գլխավորել է ֆիզիոլոգների համամիութենական ընկերությունը, եղել համագումարների և կոնֆերանսների կազմկոմիտեի նախագահ, ակադեմիական և մասնաճյուղային հանձնաժողովների նախագահ, մի շարք գիտական ամսագրերի պատասխանատու խմբագիր, ՍՍՀՄ ԳԱ կենսաբանական գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին բացառիկ ուժով դրսևորվեցին Լևոն Աբգարովիչի վեհ քաղաքացիականությունը, խոր հայրենասիրությունն ու կազմակերպչի տաղանդը: Այդ տարիներին նա ընտրվում է ՍՍՀՄ ԳԱ փոխպրեզիդենտ և ռազմական այդ փոթորկոտ, ծանր պայմաններում, հաղթահարելով մեծ դժվարություններ, կազմակերպում, ղեկավարում է երկրի գիտա-

# ՄԱՐԴ ԷՐ ՆԱ

ԴՈՒՐՍ ԳԱԼՈՎ Երևանի շրջակայքը՝ խնդրեցինք վարորդին առաջանալ մի ութ կիլոմետր, իսկ մենք զրուցելով շարունակեցինք ճանապարհը: Քաղաքային իրարանցումից, հեռախոսազանգերից զերծ նման զբոսանքը հույժ անհրաժեշտ է հանգստի համար:

— Ուրեմն մտածել ես գրե՞լ Լևոն Աբգարի Օրբելու մասին,— հարցրեց ընկերս,— ազնիվ նպատակ է:

— Ազնի՞վ: Ավելի՛ն: Հրապուրիչ: Սակայն խիստ բարդ, պատասխանատու:

— Անշուշտ: Բայց նրա կենսագրությունը կօգնի: Կարիք չես ունենա որևէ բան հորինելու: Հերոսդ, ուղեվարի պես, կտանի քեզ իր հետևից. կօգնեն և արխիվային փաստաթղթերը, ժամանակակիցները...

— Իհարկե կօգնեն: Բայց կարող են և խանգարել: Հաճախ է պատահում, որ մի բան հակասում է մյուսին, երբեմն նաև՝ հերոսի կերպարին, ողջ մթնոլորտին:

— Դե, իսկ տեսական աշխատություննե՞րը, ուսումնասիրություննե՞րը գիտական գործունեության վերաբերյալ, իր իսկ՝ Օրբելու աշխատություննե՞րը: Մի՞թե այդ օգնություն չէ:

— Այդ ամենը լավ է: Սակայն դրանք ամենևին չեն ազատում, ինչպես դու ասացիր, «հորինելու», ստեղծագործելու անհրաժեշտությունից: Ես կյանքի վեպ եմ գրելու, ոչ թե ուսումնասիրություն: Այդ բոլորովին այլ բան է:

Որոշ ժամանակ լուռ քայլում էինք:

— Որքա՞ն է գրված:

— Գրվա՞ծ: Ես արդեն մտովի խոսում եմ իմ ապագա գործող անձանց հետ: Չէ որ գիրքն սկսվում է շարադրվելուց շատ ավելի առաջ: Ժողովված, իմաստավորված նյութը, արխիվային վավերագրերը, ժամանակակիցների հուշերը և հերոսի, նրա ապրած ու ստեղծագործած ժամանակաշրջանի հետ կապված մնացած ամեն ինչ դեռ սոսկ ընկիզքն է:

— Մտովի զրույցները, թերևս, շատ ավելի լավ են մաքուր օդում, քան չորս պատերի մեջ:

— Համաձայն եմ: Բայց տանը, աշխատասենյակում, հատկապես երեկոյան, գիշերը, երբ շուրջբոլորը լուռ է, խաղաղ, միայնակ խորհրդածելն ամենևին էլ վատ չէ: Նայած թե ով ինչին է վարժվել:

— Որոշ գրողներ իրենց վեպերում ու պատմվածքներում քիչ ուշադրություն են նվիրում ընտանիքին, բարոյականությանը, առաջնությունը տալով հարցի գործնական, զուտ մասնագիտական կողմին,— նկատեց ընկերս:

— Այդպես էլ է լինում: Ինչ վերաբերում է ինձ, ապա ամենից առաջ ինձ հուզում են ընտանիքը, ծնողների և զավակների փոխհարաբերությունները, վերաբերմունքը կյանքի նկատմամբ, նրանց հույսերն ու ուրախությունները, մաքառումը, մտքերի ընթացքը.. անշուշտ այդ ամենը աշխատանքային, հասարակական գործունեության ոլորտներում:

— Պատմիր ինձ Օրբելու ընտանիքի մասին հանգամանորեն:

— Հաճույքով: Լևոն Աբգարիչը միջնակ որդին է: Նա ծնվել է Դարաչիչագում (այժմ՝ Ծաղկաձոր), 1882 թվականի հուլիսի 7-ին (նոր տոմարով): 1899 թվականին Ոսկե մեդալով ավարտել է Թիֆլիսի 8-րդ գիմնազիան: 1904 թվականին ավարտել է Պետերբուրգի ռազմաբժշկական ակադեմիան: Հայկական այս ընտանիքն ուներ իր ավանդույթները: Նրա պապը՝ Հովսեփ Օրբելին, ավարտել է Դորպատի համալսարանի բժշկական ֆակուլտետը. Լևոնի հայրը՝ Աբգար Հովսեփիչը՝ Պետերբուրգի համալսարանը՝ իրավաբանական գիտությունների թեկնածուի աստիճանով: Համալսարանն ավարտելուց հետո Աբգարը վերադառնում է հայրենիք:

— Ինչպե՞ս է պատահել, որ բոլոր որդիները ծնվել են տարբեր վայրերում:

— Շատ պարզ: Աշխատանքային տեղաշարժերի ընթացքին համապատասխան: Երբ Աբգար Հովսեփիչին նշանակեցին հաշտարար դատավոր Նախիջևանում, Արաքսի ափին, ծնվեց Ռուբենը, Ծաղկաձորում՝ Լևոնը, իսկ Քութաիսիում՝ Հովսեփը: Ապա ընտանիքը հաստատվեց Թիֆլիսում, ուր Աբգար Հովսեփիչը մի քանի տարի աշխատում էր դատաստանական ատյանում. հետո դառնալով երդվյալ հավատարմատար, զբաղվում էր մասնավոր պրակտիկայով:



Լևոն Օրբելու հայրը ամենևին նման չէր այն մարդկանց, ովքեր զբաղվածության պատրվակով երեխաներին թողնում են բախտի քմահաճույքին, իսկ հետո զարմանում, թե որտեղի՞ց են իրենց որդու կամ դստեր այդչափ թերությունները: Աբգար Հովսեփիչը, չնայած չափազանց զբաղված էր, ամենայն ուշադրությամբ հետևում էր որդիների դաստիարակությանը: Նա ուներ հիանալի գրադարան, հետաքրքրվում էր, թե ո՛ր գրողն է ամենից ավելի դուր գալիս որդիներին: Հետաքրքրական է և այն, թե ինչպես էր հայրը, երեխաների մասնակցությամբ, կազմակերպում այս կամ այն վեպի քննարկումը: Այդուամենայնիվ, նա երբեք չէր թերագնահատում իր որդիների հետաքրքրասիրությունները, այլ սիրում էր բացատրել, քննարկել: Այսպես, երբ Պետերբուրգի համալսարանի երկրորդ կուրսի ուսանող կրտսեր որդին՝ 19-ամյա Հովսեփը,1906 թվականին ցանկացավ ակադեմիկոս Մառի հետ գնալ Անի՝ պեղումների, նա իր համաձայնությունը տվեց հոր թույլտվությունն ստանալուց հետո միայն: Կամ արձակուրդների ժամանակ գալով Թիֆլիս, Հովսեփն ասաց հորը, որ կամենում է թողնել պատմաբանասիրական ֆակուլտետը և ուսումը շարունակել արևելյան լեզուների ֆակուլտետում: Հետագայում Հովսեփ Աբգարիչն այդ մասին ասել է. «Հայրիկի հետ ունեցած հինգ րոպեանոց զրույցը բավական եղավ, որ ես հրաժարվեմ այդ մտքից»:

— Իսկ ի՞նչ կասես մոր մասին:

— Լևոն Աբգարիչի մայրը՝ Վարվառա Մովսեսովնան, Արղության-Դոլգորուկիների իշխանական տոհմից է, փոքրուց իսկ աշխատանքը սիրող, տաղանդավոր մարդ: Երեխաներին ևս նա դաստիարակել է նույն ոգով: Հոգալով նրանց մասին՝ նա միաժամանակ խուսափել է ամեն ավելորդությունից: Զրկվելով ամուսնուց՝ երեսնական թվականներին նա դասավանդել է ֆրանսերեն, քաջ տիրապետելով մայրենի լեզվին, ռուսերենին և վրացերենին: Դպրոցում ծավալած հասարակական ակտիվ աշխատանքի համար ընտրվել է Թիֆլիսի քաղաքային սովետի դեպուտատ:

— Կպատմես, թերևս, եղբայրների փոխհարաբերությունների մասին:

— Ընտանիքում մանկուց սկզբնավորված եղբայրների մտերմությունը պահպանվեց նրանց ողջ կյանքում: Ավագը՝ Ռուբենը, Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետն ավարտելուց հետո ամբողջովին նվիրվեց ջրասուզակային գործին, դրա պատմությանը և հայրենական ու համաշխարհային գիտության մեջ նա դարձավ ստորջրյա հնէաբանության հիմնադիրներից մեկը:

— Լևոն Աբգարիչն ի՞նչը որոշեց դառնալ ֆիզիոլոգ:

— Անշուշտ, նրա մտերմությունը հորեղբոր՝ Թիֆլիսում ճանաչված հայտնի հոգեբույժ Դավիթ Հովսեփի Օրբելու հետ իր դերը խաղացել է գիտական ուղղության ընտրության գործում:

Այսպիսով, այդ ընտանիքում թևածող սերը աշխատանքի նկատմամբ, դատողությունների շիտակությունը, անկեղծությունը, նրբազգացությունը, համեստությունը, հասարակական պարտքի խոր զգացումը բնավորությամբ տարբեր այս եղբայրներին, տվյալ դեպքում Լևոն Աբգարիչին, դարձրել էին բացառիկ հմայքի և փայլուն ընդունակությունների տեր մարդ՝ օժտված այն ամենով, ինչ այնպես գնահատելի է կատարյալ մարդու համար:

Մեր զրույցը կարող էր շարունակվել: Բայց իջնում էր երեկոն, և մենք արդեն մեզ սպասող մեքենայի մոտ էինք: Երևանում բաժանվեցինք իրարից՝ գոհ զրույցից:

Տանը, աշխատասեղանի առաջ նստած, չէի կարողանում չմտածել Լևոն Աբգարիչի մասին: Երբ հիշում եմ իրենց գործով հրապուրված մարդկանց, որոնք համեստորեն ու անշահախնդրորեն արարում են գիտության ու կուլտուրայի գանձերը, մարդիկ, որոնց ճանաչելու, մտերմանալու երջանկությունն եմ ունեցել ես, ակամա մտաբերում եմ Բալզակի խոսքերը. «Տաղանդը նման է կանացի գեղեցկության. այն ընդամենը սոսկ խոստում է»: Ինչ խոսք, ով խնայում է իրեն, նա անելիք չունի նվիրական այն տաճարում, որի անունն է արարում:

Ձեռնարկելով Լևոն Աբգարի Օրբելու կերպարի կերտումը, ինձ համար դժվար էր գոհանալ միայն իմ անձնական զննություններով կամ նրա թողած գիտական ժառանգությամբ: Արխիվային նյութերի ամենաջանադիր ուսումնասիրությունները սոսկ մոտավոր պատկերացում են տալիս գործչի, երկրի, դարաշրջանի, գիտական տարբեր գաղափարների զարգացման ու բախման մասին: Մինչ հանդիպումները Լևոն Աբգարիչի գործընկերների ու աշակերտների, ինչպես և երկար տարիներ նրան ճանաչող անձանց հետ, երևան էին հանում նրա բնավորության նորանոր յուրահատկություններ: Այնպե՞ս մատչելի իր կարիքն ունեցողների, այնպե՞ս իմաստուն տարբեր ազգությունների իր բազմաթիվ աշակերտների նկատմամբ: Օրբելու այս հատկություններից և իր գիտական գաղափարներով ստեղծագործական կոլեկտիվներին համակելու ունակությամբ նա անջինջ հիշատակ է թողել իր ժամանակակիցների հոգում:

Ինչպիսի՞ն է եղել Լևոն Օրբելու կյանքի ուղին: Փորձենք պատասխանել այդ հարցին:

Ինչպես ասացինք, տասնինը տարեկանում նա փայլուն կերպով ավարտում է Թիֆլիսի գիմնազիան և նույն՝ 1899 թվականին, ընդունվում ռազմաբժշկական ակադեմիան: 1904 թվականին, ավարտելով այն, նշանակվում է Կրոնշտադտի Նիկոլայան զինվորական հոսպիտալի բժիշկ: Ակադեմիան ավարտելուց մեկ տարի առաջ ռազմաբժշկական ակադեմիայի կոնֆերանսը նրան արժանացնում է ոսկե մեդալի՝ առաջին փորձնական աշխատանքի համար, որն էր «Պեպսինային գեղձերի աշխատանքի համեմատությունը թափառող ներվաճյուղերի հատումից առաջ և հետո»:

Այդ տարիների մասին հետաքրքրական շատ բան է պատմում Լևոն Աբգարիչը: Չեմ կարող չվերաշարադրել գիտնականի հուշերը, որոնք լավագույնս բնութագրում են և՛ իրեն՝ Օրբելուն, և՛ նրա սիրելի ուսուցչին՝ Իվան Պետրովիչ Պավլովին:

— Ակադեմիան ավարտելուց հետո, շուտով Իվան Պետրովիչն առաջարկեց ինձ դառնալ իր ասիստենտը: Ֆիզիոլոգիական բաժնի վարիչի օգնական Սոկոլովը գնացել էր, և Իվան Պետրովիչը Սավիչին առաջարկեց զբաղեցնել նրա տեղը: Վերջինս հրաժարվեց. ունևոր մարդ էր, նյութապես լիովին ապահովված և չէր կամենում հանձն առնել որևէ ծառայողական պարտականություն: Այդ ժամանակ Իվան Պետրովիչն այն առաջարկեց ինձ: Եվ ես դարձա նրա ասիստենտը:

— Ըստ պատմածների, Իվան Պետրովիչի հետ աշխատելը հեշտ չի եղել: Ինչպե՞ս էիք զգում ձեզ՝ դառնալով նրա օգնականը,— հարցրի ես:

— Առաջին ամիսներին ստիպված էի ծովային նավատորմի ծառայությունը համատեղել Իվան Պետրովիչի մոտ աշխատելու հետ: Իհարկե, իսկույն ծայր առան ամեն տեսակ դժվարություններ այն առումով, որ ես չէի կարողանում վիրահատել, իսկ Իվան Պետրովիչին պետք էր, որ ասիստենտություն անեի վիրահատելու պահին: Նա նույն հմտությամբ աշխատում էր մերթ ձախ ձեռքով, մերթ աջ (Իվան Պետրովիչը ձախլիկ էր), միաժամանակ, նրբունելին (պինցետը) ու դանակը աջ ձեռքից արագությամբ տանում էր ձախը, իսկ ասիստենտը պետք է կարողանար հանել նրան: Իվան Պետրովիչը վիրահատում էր սաստիկ արագ: Վիրահատում էր սքանչելի, երբեմն ուղղակի գոռում էր.

— Դուք այդ կձախողե՞ք, դուք ամեն ինչ կփչացնե՞ք: Ա՜խ, թողե՛ք, դուք չեք պահում ինչպես պետք է..

Շա՜տ ծանր էր: Մեկ թե երկու ամսվա նման աշխատանքից հետո ես նրան ասացի.

— Գիտե՞ք ինչ, Իվան Պետրո՛վիչ, ազատեցե՛ք ինձ, թույլ տվեք ինձ կամավոր աշխատել, ինչպես մինչև այժմ աշխատել եմ, իսկ ասիստենտ թող լինի մեկ ուրիշը, որն ավելի հարմար է այդ գործին. ինչպես երևում է, ես գլուխ չեմ հանում: Իրոք, այդպես ավելի լավ կլինի:

— Այդ ի՞նչ է, պարո՛ն, գոռգոռում եմ դրա՞ համար:

— Բայց, ախր, դուք բարկանում եք նրա համար, որ ինձ մոտ վատ է ստացվում:

— Դե՛, այդ ուղղակի իմ սովորությունն է այդպիսին, դուք էլ այդպես վերաբերվեցեք դրան... Երբ մտնում եք լաբորատորիա, շան հոտ զգո՞ւմ եք:

— Այո՛, զգում եմ:

— Ուրեմն, իմ գոռգոռոցն ընդունեք իբրև այդ շան հոտ: Հոտի համար հո դուք լաբորատորիան չե՞ք թողնի: Վարժվեցե՛ք գոռգոռոցիս:

— Որ այդպես է, կշարունակեմ, կմնամ:

Շուտով վարժվեցի Իվան Պետրովիչին:

Պավլովը շատ արդարամիտ մարդ էր: Եթե զայրույթի պահին նա որևէ ավելորդ բան էր ասում, տեսնելով, որ ինքը սխալվել կամ անիրավացի է վարվել, ետ էր առնում իր խոսքերը, ներողություն խնդրում իրենից շատ ավելի երիտասարդ մարդուց:

Հիշում եմ. Իվան Պետրովիչը զննում էր իմ վիրահատած շներին:

— Զարմանալի՜ է, որքա՜ն գեղեցիկ է վիրահատում Լևոն Աբգարիչը, ինչպիսի՜ հաճույք է նայելը. ամեն ինչ այնպես լավ, գեղեցիկ է արված:

Որոշ ժամանակ անց վիրահատված շներից մեկը սատկեց:

— Ահա՛,— ասաց Պավլովը,— այս հետազոտողի գեղագիտական հակումների արգասիքը: Վիրահատման գեղեցկության հետևից է ընկնում, իսկ արդյունքը՝ շունը սատկում է...

— Հիշում եմ մի դեպք ևս,— շարունակում է Օրբելին,— 1903 թվականին, աշնանը, ես վերադառնում էի արձակուրդից և մտածում, թե կստանամ նաև երրորդ շունը, կշարունակեմ աշխատել: Իսկ Իվան Պետրովիչը հանկարծ կանչում է ինձ ու Ցիտովիչին և ասում.

— Ակադեմիայում պարգևատրում են ոսկե մեդալով:

Անցյալում նախօրոք թեմա էր հանձնարարվում, որի համաձայն և աշխատանք էր տարվում պարգևի հայցման նպատակով: Այս անգամ որոշված էր պարգևատրել լավագույն ընթացիկ աշխատանքի համար:



— Ուրեմն այսպես, բարի եղեք, երկուսդ էլ տասն օրվա ընթացքում ամփոփեք ձեր աշխատանքները. դրանք ես ներկայացնելու եմ ոսկե մեդալի:

Մենք՝ երկու ընկերներս, մրցակիցների վիճակում ենք: Երկուսս էլ նստեցինք տանը (այդ հենց ուսումնական տարվա սկիզբն էր), որոշելով թողնել մնացած բոլոր զբաղմունքները: Ես գրեցի աշխատանքը, կինս՝ Ելիզավետա Հովակիմովնան, արտագրեց (նա լավ ձեռագիր ուներ, իսկ իմը վատն էր), վերագծեց բոլոր կորագծերը, և ուսումնասիրությունը ներկայացվեց ակադեմիա: Ցիտովիչն էլ ներկայացրեց իրենը: Աշխատանքները քննարկեց հանձնաժողովը, ժյուրին նիստ գումարեց և, ի վերջո, ինձ և համակուրսեցի ընկերոջս՝ Արբուլխովին, հանձնեցին ոսկե մեդալներ, իսկ Ցիտովիչին՝ արծաթե: Ռազմական մինիստր Կուրոպատկինը հոգաց և այն մասին, որ ոսկե մեդալ ստացողներին տրվի նաև 100-ական ռուբլի դրամական պարգև: Այն ժամանակ այդ մե՜ծ փող էր: Այդպիսով ես պարգևատրվեցի նաև 100 ռուբլով: Այն ես տարա Իվան Պետրովիչին և խնդրեցի բաժանել իմ ու լաբորատորիայի ընկերոջս՝ Ցիտովիչի միջև: Իվան Պետրովիչը նայեց ինձ գոհ, խրախուսող ժպիտով և, հրավիրելով Ցիտովիչին, 100 ռուբլին հավասարապես կիսեց երկուսիս միջև:

Ոսկե մեդալը ստանալուց կարճ ժամանակ անց, 1903 թվականի սեպտեմբերի սկզբին, Իվան Պետրովիչը Ռուսական բժիշկների ընկերությունում դրեց իմ զեկուցումը: Այդ իմ կյանքի մեծ իրադարձություններից մեկն էր: 1903 թվականի սեպտեմբերի 23-ին կայացավ իմ զեկուցումը՝ «Պեպսինային գեղձերի աշխատանքի համեմատությունը թափառող ներվաճյուղերի հատումից առաջ և հետո»: Ներկա էին շատ անվանի պրոֆեսորներ, բժիշկներ, ուսանողներ: Ելիզավետա Հովակիմովնան ինձ համար նկարել էր մեծ կորագծեր՝ ցուցադրելու համար ստամոքսի կտրվածքների սխեման: Շատերը զարմացած էին, որ զեկուցում եմ առանց գրառումների: Այդ իմ առաջին ելույթն էր: Հիշում եմ, զեկուցումից հետո շատերը ելույթ ունեցան, հարցեր տվեցին: Իվան Պետրովիչը նստել էր իբրև նախագահի տեղակալ, բացատրություններ էր տալիս զեկուցման վերաբերյալ: Այդ հանդիսավոր օրը միշտ կմնա հիշողությանս մեջ:

Այդ օրերին մրցույթ էր հայտարարված ակադեմիայի թափուր տեղերի համար: Ես նույնպես մասնակցեցի մրցույթին, սակայն «դուրս թռա», չստանալով ձայների պետք եղած քանակությունը: Մրցույթն այնպիսին էր, որ աշխատություն պետք է ներկայացնեին նրանք, ովքեր բարձրագույն դպրոցն ավարտել էին գերազանց:

Հիշում եմ առաջին ընթացակարգը. սաստիկ տհաճ. երեք թեմաներից ընկել էր ինձ համար ամենանվազ հետաքրքրականը («Հանգիստը ու աշխատանքը զանազան հիվանդությունների բուժման գործում», մյուս երկու թեմաները ես չեմ էլ հիշում): Գրեցի, կոկեցի-սոկեցի... խրախուսանքի չարժանացավ: Քննողները եկան երեկոյան վեցին մոտ, իմանալով, որ պիտի նստեն մինչև գիշերվա երկուսը, որովհետև պետք է բարձրաձայն կարդային և գնահատեին քսաներկու աշխատանք: Թեյեցին, բերվեցին տարբեր խմորեղեններ, կոնֆետներ, կոնյակ էլ անուշ արեցին և սկըսեցին հերթով կարդալ: Նայած ով էր կարդացողը, ըստ այդմ էլ կարելի էր կանխավ ասել՝ հեղինակը կստանա՞ հարկ եղած ձայների քանակությունը, թե՞ ոչ: Մեկը կարդում էր տիրացուի պես: Սիրոտինը սովորաբար կարդում էր կատակաբանելով, ծաղրական տոնով, այնպես որ, որպես օրենք, նրա ներկայացրած աշխատանքները ձախողվում էին: Կային և այնպիսիք, որ ջանում էին կարդալ պաթոսով, արտահայտիչ: Սակայն այդ երկրորդական նշանակություն ուներ: Սովորաբար քվեարկության ժամանակ մենք հավաքվում էինք գլխավոր շենքի նախասրահում, տառապում, սպասելով որոշմանը: Մեզնից անբաժան երեք դռնապանները կարեկցում էին մեզ, նայում կոնֆերանսի դահլիճը և հաղորդում, թե քանի աշխատանք է կարդացվել, քանիսն է մնում:

Վերջապես գիշերվա երկուսն անց կեսին արդյունքները հայտնեցին: Մեր շրջանավարտներից մնացին Աստվածատուրովը, Դեբևենկոն, Գրիգոլովը: Նրանք շարունակեցին առաջ գնալ և դարձան պրոֆեսորներ: Մնացածները ձախողվեցին:

Այսպես, մրցույթում անհաջողության մատնըվելուց հետո, ավելի քան երկու տարի աշխատեցի նավատորմում և զուգահեռաբար, երկրորդ տարվանից սկսած՝ Իվան Պետրովիչի մոտ...

Լևոն Աբգարիչը մտասուզվեց: Լռություն տիրեց: Ապա հանկարծ հիշեց ձախողման մի դեպք ևս, բայց արդեն ադյունկտուրայի քննությունների մրցույթի ժամանակ:

— Կարո՞ղ եք պատկերացնել, որքան մեծ էր վիշտս, երբ մրցութային հանձնաժողովը հայտնեց, որ ես հանձնողների թվում չեմ: Ցնցված էի, որովհետև չգիտեի՝ ինչ կլինի ինձ հետ հետագայում, կկարողանա՞մ շարունակել գիտական աշխատանքը:

Հանգամանքներն այնպես դասավորվեցին,

մարդը կարող է օժտված լինել բարոյական այլ հատկանիշներով:

— Պատահե՞լ է, որ դուք հիասթափվեք որևէ մեկից,— հարցրի ես:

— Իմ կյանքն ընթացել է հիանալի գործընկերների ու աշակերտների շրջապատում: Բայց դե մեզնից ո՞վ չի ապրել հիասթափության դառնությունը: Իմ առանձին աշակերտներ այդ առիթը տվել են մի անգամ, երբ անիրավացիորեն ես դժբախտության մեջ ընկա: Երբ ամեն ինչ պարզվեց, ճշմարտությունը հաղթանակեց, հաջորդեց երբեմնի զրպարտիչների, շողոքորթությունը: Ըստ էության շողոքորթությունը նույն կեղծիքն է, միայն նշանակետը հարաբերությունները կարգավորելն ու դուրս պրծնելն է, իր և իր շրջապատի համար օգուտ քաղելը: Նրանք չեն էլ մտածում, թե ինչի գնով է անարդարությունը նահանջել: Մարդն արդարացված է: Սակայն ո՞վ կվերադարձնի նրա առողջությունն ու ուժը: Մեր սոցիալիստական հասարակարգում հանրընդհանուր արհամարհանքի պետք է արժանանան այն մարդիկ, որոնցից անպակաս են կեղծ ժպիտն ու շողոքորթությունը: Ոչնչություն չի հանդուրժում խելացի, սկզբունքային, ինքնուրույն և համարձակ մարդկանց:

— Լևոն Աբգարիչ, ձեզ, անշուշտ, հայտնի է, ինչպիսի անողոքությամբ էր Պուշկինը ծաղրում նրանց, ովքեր այնպես անպատկառորեն էին վերաբերվում իրենց գործերով փառաբանված մարդկանց նկատմամբ:

— Մարդկայնության, պարզության մասին բազմիցս խոսել է և Տոլստոյը,— պատասխանեց Օրբելին,— նա գտնում էր, որ ազնիվ պարզությունը բարոյական գեղեցկության գլխավոր պայմանն է: Ուժեղ մարդիկ միշտ հասարակ են եղել: Կարլ Մարքսը բոլոր արժանիքներից ամենաբարձրը համարում էր պարզությունը: Շատ կարևոր է, որ կյանքի ուղին ոտք դնող յուրաքանչյուր ոք երբեմն հարցնի իրեն. օժտվա՞ծ է արդյոք ինքն այն հատկություններով, որոնք իրավունք են տալիս իրեն մարդ կոչվելու:

Ընտանեկան, դպրոցական դաստիարակության ողջ կարևորությամբ հանդերձ մեծ նշանակություն ունի շրջապատող միջավայրը,— շարունակում է գիտնականը,— վերցնենք, օրինակ, մեր ռազմածովային նավատորմը: Այստեղ գալիս են ամենատարբեր մարդիկ: Բայց բավական է, որ նրանք հագնեն ծովայինի համազգեստը, և նրանց համար կյանքի օրենք են դառնում ազնվությունը, խիզախությունը, հայրենասիրությունը, վեհանձնությունը:

Հետադարձ հայացք նետելով գիտության մեջ անցած իմ կյանքին՝ բավականությամբ կարող եմ նշել. այո՛, իմ ղեկավարած ինստիտուտներում, լաբորատորիաներում մեծ մասամբ աշխատել են գիտություն ստեղծող մարդիկ: Դժվարին էր այդ ճանապարհը մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը, բայց և հաճելի, քանի որ դժվարությունները չեն թուլացնում ոգին, հակառակը, ուժեղացնում են: Տաղանդների կատարյալ ծաղկումը տեղի է ունենում մեր երկրում, մեր օրերին, երբ աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը գիտության և գիտնականների նկատմամբ ցուցաբերում է նման սրտացավ հոգատարություն, միջոցներ չխնայելով մեր երկրի գիտատեխնիկական մտքի հզոր վերելքի համար: Այդ ճանապարհը զերծ չի եղել դժվարություններից: Բայց մենք առնականանում էինք՝ հաղթահարելով դրանք և ընթանում դեպի բնության գաղտնիքների բացահայտման նորանոր բնագծեր, երջանիկ, որ մեր աշխատանքով բարձր ենք պահում սովետական մարդու, սովետական գիտնականի անունը:

Լևոն Օրբելին բացառիկ ջերմությամբ էր խոսում իր առաջին ուսուցիչներից մեկի՝ Մ. Ջանանի մասին: Ես գիտեի, որ շատ տարիներ անց, երբ Օրբելին արդեն համաշխարհային ճանաչման արժանացած գիտնական էր, ծեր ուսուցիչը գրել էր իր երբեմնի աշակերտին. «Երբ ես քեզ գրագիտություն էի սովորեցնում, դու զարմացնում էիր ինձ քո հարցասիրությամբ»:

Խոսելով իր ծնողների մասին, որոնք այնքան հոգևոր կորով են ներդրել իրենց որդիների դաստիարակության գործում, Օրբելու հայրը իր ընկերների շրջանում ասել է. «Մեզ համարում են այնպիսի ազգ, որը տվել է ականավոր զորավարներ, բայց չի տվել խոշոր գիտնականներ, և ես շատ ուրախ եմ, որ իմ որդիներն ընթանում են նյութապես անապահով ճանապարհով՝ հանուն գիտության և ի փառս այն ազգի, որի սերունդն են և որն ամենից ավելի կարիք ունի ստիպելու այլոց հարգելու իրեն, մարդկությանը տալով ականավոր ներկայացուցիչներ»:

Այսօր մենք իրավունք ունենք ասելու. նրա որդիները՝ Ռուբենը, Լևոնը, Հովսեփը, արդարացրել են իրենց ծնողների հույսերը: Օգտվելով գիտական ստեղծագործության լայն հնարավորություններից՝ նրանք դարձել են ո՛չ միայն հայ ժողովրդի, այլև մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների պարծանքը: Ահա ինչու Լևոն Օրբելու անունը դրվում է աշխարհի այնպիսի մեծ որդիների անվանաշարում, ինչպիսիք են Սեչենովը, Պավլովը:

Իմ այն հարցին, թե ինչպես է նա վերաբերվում իր աշակերտներին (քանի որ ինձ հայտնի է, թե ինչպես են որոշ ղեկավարներ խուսափում տաղանդավոր ու համարձակ երիտասարդ հետազոտողներից), մեծ գիտնականը պատասխանեց. «Գիտական աշխատանքում ամենասարսափելին այն է, երբ ուսուցիչը վախենում է իր աշակերտներից, թե աշակերտը հանկարծ կգերազանցի իրեն: Հակառակը, լավ ղեկավարը նա է, որը ցանկանում է, որ աշակերտներն առաջ անցնեն իրենից: Առանց դրա գիտության առաջընթացն անհնար է»:

Ինձ հաջողվեց հանդիպել Օրբելու շատ աշակերտների ու հետևորդների, նրանք իրենց նվիրական պարտքն են համարում ընթանալ սիրելի ուսուցչի հարթած ճանապարհով: Ահա ինչ է ասում Օրբելու մասին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ պրոֆեսոր Լ. Վորոնինը. «Գլխավորելով գիտական աշխատողների հսկայական կոլեկտիվը, օգտվելով հիանալիորեն սարքավորված լաբորատորիաներից, որպիսիք սովետական կառավարությունը սարքավորել էր իր գիտնականների համար, Լևոն Աբգարիչը մեծ ավանդ է ներդրել հայրենական ֆիզիոլոգիայի զարգացման մարզում»:

Օրբելին և նրա աշխատանքային ընկերները Հայրենական մեծ պատերազմի տարիներին ակտիվ մասնակցեցին կաուզալգիայի (այրող ցավի) մեխանիզմի բացահայտմանը և ցույց տվեցին սիմպատիկ նյարդային համակարգի դերը այդ ծանր ցավերի ժամանակ: Ցավի մեխանիզմի բացահայտումը հնարավորություն ընձեռեց սովետական կլինիցիստներին՝ գտնելու կաուզալգիայի դեմ մղվող պայքարի նոր միջոցներ:

Լևոն Օրբելու մի այլ տաղանդավոր աշակերտը՝ դոկտոր, պրոֆեսոր Ս. Լեբեդինսկին, նշում է. «Լ. Օրբելու դպրոցը գիտության մեջ երբևիցե գոյություն ունեցող դպրոցներից ամենաբազմամարդն է. հազվադեպ է հաջողվում ստեղծել այդպիսի մեծ ու որակյալ գիտական կոլեկտիվ: Նրա ղեկավարած լաբորատորիաներով են անցել գիտական տարբեր հակումներ ունեցող հարյուրավոր մարդիկ:

Լաբորատոր պայմաններում տեսության զարգացմանը ծառայող ակնբախ հաջողություններին զուգընթաց Օրբելին ճիշտ էր գնահատում ֆիզիոլոգիայի նշանակությունը մեր երկրի պաշտպանունակության բարձրացման ասպարեզում: Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի գիտական կազմակերպումը, դեպի ստրատոսֆերա կատարվող թռիչքների, ծովերի և օվկիանոսների խորքերը սուզվելու ֆիզիոլոգիական ապահովման հարցերը, պայթող ալիքի ազդեցությունը օրգանիզմի վրա, ինչպես և շատ այլ խնդիրներ մանրակրկիտ ուսումնասիրվում են ակադեմիկոս Օրբելու և նրա աշխատակիցների կողմից: Սովետական բուռն հայրենասերը Հայրենական պատերազմի տարիներին կազմում և ղեկավարում է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային կից ռազմասանիտարական հանձնաժողովը, որը կազմակերպում և գիտական աշխատողների ջանքերն ուղղում էր պաշտպանական խնդիրների լուծմանը»:

Պատերազմի տարիներին բազմաթիվ նամակներ է ստացել Օրբելին իր աշխատակիցներից, ինչպես ճակատայիններից, նույնպես և շրջափակված Լենինգրադում գտնվողներից կամ էվակուացվածներից: Ահա, օրինակ, պատերազմի առաջին ամիսներին ոտքերից զրկված նրա աշխատակցի՝ Մ. Մ. Ռեյդլերի նամակը: Զննայած ծանր վիճակին, Մոսկվայի զինվորական հոսպիտալում բուժվելու ընթացքում, 1944 թվականի ապրիլին, նա կարողացավ պաշտպանել թեկնածուական դիսերտացիան: Պաշտպանությունից հետո հիշելով իր ռազմաճակատային օրերը՝ Ռեյդլերը գրել է. «Եղել են դաժան գրոհներ, արյունահեղ մարտեր, մղձավանջային գիշերներ՝ շչակների սուլոցով և գերմանական օդանավերի ռմբակոծությունից քանդվող շենքերի դղրդյունով, եղել է քաղաքի հրետակոծում, ցուրտ, քաղց, մերձավորների մահ... Մենք՝ Ձեր աշխատակիցներս, փառապանծ լենինգրադցիների հետ մեկտեղ դիմացել ենք այդ ամենին, դիմացել այն ամենին, ինչ վեր է մարդկային հնարավորություններից: Դուք, Լևոն Աբգարիչ, մեզ հետ եք եղել, մեր առջևում, Դուք խրախուսել ու ոգևորել եք մեզ: Դուք եղել եք այն մարդկանց առաջին շարքերում, ովքեր կիսել են Լենինգրադի խոր տառապանքը, մեծ սխրանքները, խիզախումը, անմոռաց տանջանքը»:

Օրբելու նկատմամբ նրա աշակերտների վերաբերմունքը խիստ ակնբախ է դրսևորված նրան ուղղված մի ուղերձում.

«Թանկագին Լևոն Աբգարի՛չ. մարդու և գիտնականի Ձեր կերպարը, Ձեր պարզությունը, շիտակությունն ու Ձեր բոլոր գործերի սկզբունքայնությունը՝ միացած նրբազգացության և վեհ մարդկայնության հետ, սեփական պարտքի նկատմամբ ունեցած Ձեր վերաբերմունքը կենդանի օրինակ են ամենքիս համար, մղում են յուրաքանչյուրիս հպարտանալու Ձեր աշակերտը համարվելու իրավունքով և հանդիսանում են այն ամուր ցեմենտը, որը համակում է մեզ համախմբվածության և միասնության գիտակցությամբ»:

Սովետական կառավարությունը բարձր է գնահատել ակադեմիկոս Օրբելու բացառիկ գիտական գործունեությունը: Նրան շնորհված է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում: Հայրենիքին մատուցած ծառայություն-

ների համար նա պարգևատրվել է Լենինի չորս, Կարմիր դրոշի երկու շքանշաններով, Աշխատանքային կարմիր դրոշի, Կարմիր աստղի շքանշաններով, բազմաթիվ մեդալներով: Նա արժանացել է առաջին աստիճանի պետական մրցանակի:

...Իր անմահությունը մարդը հաստատում է ո՛չ միայն իր ժառանգներով: Նրա մեծությունը նաև հոգևոր հարուստ ժառանգությունն է: Լևոն Օրբելին մեծ հարստություն է կտակել: Հույժ ինքնատիպ են նրա հայացքները վեգետատիվ և ներվային համակարգի ֆիզիոլոգիայի, զգայական օրգանների ֆունկցիայի մասին ուսմունքի, ֆիզիոլոգիայի էվոլյուցիայի մասին, որոնց հիմնադիրը հանդիսանում է ինքը՝ Լևոն Աբգարիչը:

Ուրախալի է, որ Օրբելու ինքնատիպ գաղափարները զարգանում են ո՛չ միայն մեր երկրում, այլև արտասահմանում, ուր լայն ճանաչում, հարգանք ու բարի փառք է վայելում անվանի գիտնականը:

Անսահման բարի մարդ էր Օրբելին: Մշտապես լարված, գերծանրաբեռնված գիտնականն այրենասերը ժամանակ էր գտնում սատարելու իր օգնության կարիքն ունեցողներին: Նա ապրում էր ո՛չ միայն մարդկանց շրջապատում, այլև մարդկանց համար:

Մարդ էր նա:

ԱՇՈՏ ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ

---




Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 14.06.82 թ.: Ստորագրված է տպագրության՝ 9.07.82 թ.: ՎՖ 05908: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15532: Պատվեր՝ 1536:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.